*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Պատասխանատու խմբագիր՝
Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՎՖ 00935, Պատվեր № 304, տիրաժ 5000
Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

# ՆՅՈՒԹԵՐ
# ՄԱՅԻՍԻ 1-Ի ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐՎԱ ՄԱՍԻՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Մայիսի 1-ի օրը այժմ դարձել է գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ պայքարող աշխատավորության մարտական ուժերի ստուգատեսի օր:*

*Հիտլերյան ավազակ իմպերիալիստները հարյուրավոր միլիոն աշխատավորների նետել են պատերազմի հորձանքի մեջ:*

*Սարսափելի վտանգ է կախվել աշխարհի ժողովուրդների վրա: Գերմանական ֆաշիստները իրենց նպատակ են դրել մասամբ կոտորել ու ոչնչացնել, մասամբ ստրուկ դարձնել միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորների: Արևմտյան Եվրոպայում տարած հեշտ հաղթանակներով արբեցած, գերմանա-ֆաշիստական ստրկացնողները երազում էին իրենց տիրապետությունը հաստատել ամբողջ աշխարհի վրա, իրենց ար-*

յունոտ ձեռքով զավթել ուրիշների հողերն ու հարստությունները, նվաճել բոլոր ազատասեր ժողովուրդներին: Այդ հանցագործ պլանը իրագործելու համար գերմանական իմպերիալիստները հանկարծակի և ուխտադրժորեն հարձակվեցին մեր երկրի վրա, հույս ունենալով արագ շարքից դուրս հանել նրան և իրենց ձեռքերն ազատել Անգլիայի, Ամերիկայի ու մյուս երկրների ժողովուրդներին նվաճելու համար: Թշնամին իր համարյա ամբողջ բանակն ու տեխնիկան նետեց մեզ վրա:

Ֆաշիստների մտադրությամբ նրանց զրահապատ հրոսակախմբերը պետք է հաղթական երթով անցնեին սովետական հողով, օրացուցային չվացուցակով զավթեին Մոսկվան, Լենինգրադը, հասնեին Ուրալին և մեր երկրին հարկադրեին կապիտուլյացիայի դիմելու: Օգտվելով իրենց հարձակման հանկարծակիությունից և Եվրոպայում երկրորդ ճակատի բացակայությունից, օգտվելով իրենց թվական գերակշռությունից և տանկերի ու ինքնաթիռների քանակական գերակշռությունից, գերմանա-ֆաշիստական հորդաները սովետական հողը ծածկելով իրենց դիակներով և ջարդված տանկերով ու ինքնաթիռներով, ժամանակավորապես զավ-



թեցին մեր տերիտորիայի զգալի մասը, հասան մինչև Վոլգա, ներխուժեցին Հյուսիսային Կովկաս: Իրենց կուրության և անմիտ պարծենկոտության մեջ նրանք մեր հողերի ժամանակավոր զավթումը գնահատեցին որպես կայուն նվաճում: 1941 և 1942 թվերին նրանք տասնյակ անգամ ամբողջ աշխարհով մեկ ազդարարեցին, թե իբր ոչնչացրել են Կարմիր Բանակը, Կարմիր Նավատորմը. տասնյակ անգամ նրանք նշանակում էին Սովետական Միության դեմ իրենց հաղթանակի ժամկետները:

Գերմանական զավթիչները գերագնահատեցին իրենց ուժերը, թերագնահատեցին Սովետական Միության ուժերը:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը իր տնտեսության զարգացմամբ ու կազմակերպմամբ, իր ժողովուրդների ռազմական հմտությամբ և իր զորքերի մարտական ոգով, ժողովրդի տոկունությամբ և միասնությամբ ավելի ուժեղ հանդիսացավ իր հակառակորդից՝ ֆաշիստական Գերմանիայից և նրա եվրոպական գործակիցներից:

Հանճարեղ զորավար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի առաջնորդությամբ Կարմիր Բանակը վայելելով սո-

վետական ամբողջ ժողովրդի աջակցությունը, ոչ միայն կանգնեցրեց թշնամուն, այլև հուժկու հարվածներ հասցրեց ֆաշիստական հրոսակախմբերին: Ստալինգրադը դարձավ գերման-ֆաշիստական բանակի մայրամուտը: Ստալինգրադից, Կովկասի նախալեռներից գերմանական հորդան Կարմիր Բանակի խորտակիչ հարվածների տակ ետ շպրտվեց դեպի Սովետական Միության արևմտյան սահմանը:

Կարմիր Բանակը հաջողությամբ կատարեց 1942—1943 թվի ձմեռային կամպանիան, շահեց 1943 թվի ամառային ճակատամարտը, ծավալեց 1943—1944 թվի ձմեռային հաղթական հարձակումը:

Այդ պայքարում Կարմիր Բանակը և սովետական ժողովուրդը դրսևորում են անսահման սեր դեպի իրենց Հայրենիքը, բարձր կազմակերպվածություն, զինվորական փայլուն հմտություն և չգերազանցված կայունություն: Ռազմիկ ժողովրդի, հերոս ժողովրդի այդ հոյակապ գծերը ռուս մեծ ժողովրդի հերոսական պատմությամբ դաստիարակված պանծալի տրադիցիաների արդյունքն են և ամենից առաջ սոցիալիզմի համար Լենինի-Ստալինի հաղթական դրոշով ՍՍՌՄ ժողովուրդների



մղած հերոսական պայքարի արդյունքը:

Ռուս ժողովուրդը բազմիցս կենաց և մահու պայքար է մղել օտարերկրյա զավթիչների դեմ, նա զենքը ձեռքին պաշտպանել է իր անկախությունը՝ երբ Ջինգիզխանի հորդաները գերել են Ռուսաստանը, սպառնալով գերել Եվրոպան. ժողովուրդը զենքը ձեռքին պաշտպանել է իր երկիրը գերմանական շուն ասպետների կողմից Ռուսաստանը ստրկացնելու փորձերից. ռուս ժողովուրդը սպառազեն զենքով վռնդել է լեհական շլյախտային, որոնք հավակնություն ունեին տիրապետություն հաստատելու Ռուսաստանում, ռուսական ռազմիկները ջախջախել են Կարլոս 12-րդի շվեդական առաջնակարգ բանակը: Ռուսական զենքը քանիցս հռչակվել է Եվրոպայի դաշտերում. ռուսական հրաշք դյուցազունները Սուվորովի գլխավորությամբ ջախջախեցին Նապոլեոնյան զորքերին և ամենադժվարին պայմաններում անցան շվեյցարական Ալպերով. Բագրատիոնի գվարդիականները Սեն-Գոթարդի լեռնանցքում գրավեցին Սատանի կամուրջը. ռուսական բանակները Կուտուզովի առաջնորդությամբ հիմնովին կործանեցին Նապոլեոնի վիթխարի բանակը:

Բազմադարյան պայքարում մեր ժողովուրդը կռփել է իր կայունությունը, ճարպկությունը, քաջությունը, զինվորական արիությունը և վարպետությունը:

Մեր ժողովրդի այդ հիանալի հատկությունները հետագա զարգացում ստացան ու ամրապնդվեցին սովետական հասարակարգի հիման վրա:

Մեր Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը շարունակում են զարգացնել ու կատարելագործել ռուս ռազմիկի պանծալի տրադիցիաները: Նրանք սրբությամբ հարգում են Ալեքսանդր Նևսկու, Սուվորովի, Կուտուզովի, Բոգդան Խմելնիցկու, Ուշակովի և Նախիմովի հիշատակը. սովետական ժողովուրդը սրբությամբ հարգում և բազմապատկում է նրանց զինվորական արիությունն ու արվեստը:

Նոր հասարակարգը, որ մեր ժողովուրդը ձեռք է բերել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ, դարձավ Սովետական Միության ուժի ու հզորության աղբյուրը: Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ Սովետական իշխանությունը ապահովեց բարձր զարգացած սոցիալիստական արդյունաբերության ստեղծումը մեր երկրում



և ՍՍՌՄ-ն դարձրեց ինդուստրիալ ու կոլխոզային հզոր տերություն: Սովետական իշխանությունը գյուղացիության օգնեց կազմակերպելու սոցիալիստական խոշոր գյուղատնտեսություն և Սովետական Միությունը դարձրեց անխորտակելի բերդ: Նա Սովետական Միության բազմազգ և բազմալեզու ժողովրդին համախմբեց միասնական, ընդհանուր եղբայրական ընտանիքում և ապահովեց ՍՍՌՄ ժողովուրդների ստեղծագործական բոլոր ուժերի զարգացումը: Լենին-Ստալինի պարտիան սովետական ամբողջ ժողովրդին ոգևորեց ու կազմակերպեց սրբազան ազատագրական պայքարի ընդդեմ ֆաշիստական զավթիչների:

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, հանճարեղ առաջնորդ և զորավար ընկեր Ստալինի ղեկավարությամբ Կարմիր Բանակը, սովետական ժողովուրդը Հայրենական պատերազմի ընթացքի մեջ բեկում առաջ բերին Սովետական Միության օգտին:

1942 թվի նոյեմբերից Կարմիր Բանակը մարտական նախաձեռնությունը անշեղորեն պահում է իր ձեռքում, անկանգ հարձակում է կատարում և թշնամուն հասցնում

է իր ուժով գնալով ավելի հարաճուն հարվածներ: Այդ ժամանակվանից Կարմիր Բանակը հաղթական ուղի անցավ Ստալինգրադի մոտ, Վոլգայից մինչև Պրուտ և Սերետ գետերը: 1943—1944 թվերի ձմեռային կամպանիայի 4 ու կես ամսում, պատերազմական գործողությունների համար անբարենպաստ ձմեռվա դժվարին պայմաններում Կարմիր Բանակը լիկվիդացրեց թշնամու հզոր պաշտպանությունը Դնեպրի վրա, Ժլոբինից մինչև Խերսոն, լիկվիդացրեց գերմանացիների հակահարձակման փորձերը Ժիտոմիրի, Կրիվոյ Ռոգի, Ումանի, Ստարոկոնստանտինովի շրջաններում, շրջապատեց և ոչնչացրեց գերմանացիների խոշոր խմբավորումներ Կորսուն—Շևչենկովսկիի, Բերեզնեգովատոյե—Սնեգիրյովկայի շրջաններում և Ռադոմիշլից հյուսիս: Ճանապարհազրկության պայմաններում, գարնանային հալոցքի ժամանակ Ուկրաինական 1-ին, 2-րդ և 3-րդ ռազմաճակատների զորքերը իրենց ուժով և սրընթացությամբ չտեսնված հարձակում ծավալեցին Աջափնյա Ուկրաինայում, այդտեղ խորտակեցին գերմանացիների ամբողջ պաշտպանությունը, մասնատում են թշնամու զորքերին ու ոչնչաց-



նում նրան: Զարգացնելով սրընթաց հարձակումը, սովետական քաջարի ռազմիկները հասան Կարպատյան նախալեռներին, երկու մասի բաժանեցին գերմանացիների հարավային ռազմաճակատը, որն օտարերկրյա մամուլի հաղորդումներով բաղկացած է ոչ պակաս քան 80 դիվիզիայից, զրկեցին նրան հիմնական կոմունիկացիաներից և ոչնչացնում են գերմանական խմբավորումները Կարպատյան լեռների, Տիրասպոլ—Քիշնևի շրջանում, ինչպես նաև Ռումինիայի խորքը նահանջող գերմանա-ռումինական զորքերին:

Մարտերի մեկ ամսից պակաս ժամանակամիջոցում, 1944 թվի մարտի 4-ից մինչև 31-ը միայն Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը գերմանական զավթիչներից մաքրեցին 41·940 քառակուսի կիլոմետր սովետական տերիտորիա, ազատագրեցին Ուկրաինայի 3 մարզային կենտրոն, 57 քաղաք, 11 երկաթուղային հանգույց, 647 խոշոր և 3·801 այլ բնակավայր: Գերմանա-ֆաշիստական զորքերը հսկայական կորուստներ են կրում: Մարտ ամսին հարձակման 27 օրվա ընթացքում Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը ջախջախեցին գերմանացիների 28

դիվիզիա, 5 դիվիզիոն խումբ և ռումինացիների մեկ դիվիզիա: Ֆաշիստները կորցրին սպանված ու գերի ընկած 208.260 զինվոր ու սպա, 2.187 տանկ և ինքնագնաց հրանոթ, 4.602 հրանոթ, 8.429 գնդացիր, 53.987 ավտոմեքենա:

Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը հարձակման միայն 17 օրում, 1944 թվի մարտի 10-ից մինչև 27-ը սրընթաց առաջխաղացում կատարեցին Ումանից ու Կիրովոգրադից մինչև մեր պետական սահմանը՝ Պրուտ գետը, ազատագրեցին Սովետական Ուկրաինայի և Սովետական Մոլդավիայի տասնյակ քաղաքներ ու հազարավոր բնակավայրեր:

Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը մարտի 13-ին անցնելով Դնեպր գետը և գրավելով Խերսոն քաղաքը, հաղթականորեն շարժվում են դեպի արևմուտք: Նրանք թշնամուց մաքրեցին Նիկոլաևի և Օդեսայի մարզերը, թշնամուց ազատագրեցին Օդեսան՝ Սև ծովի կարևորագույն նավահանգիստը:

Ուկրաինական 4-րդ ռազմաճակատի զորքերը ճեղքեցին Պերեկոպի գերմանական ամրությունները, անցան Սիվաշը և զարգացնելով հարձակումը, գրավեցին Ղրիմի



կարևորագույն երկաթուղային հանգույց Ջանկոյ քաղաքը: Առանձին Ծովափնյա բանակի զորքերը հարձակման անցնելով Կերչի թերակղզում, ճեղքեցին հակառակորդի խիստ ամրացված պաշտպանությունը և ապրիլի 11-ին գրավեցին Կերչ քաղաքն ու բերդը:

Ձմեռային մարտերի ժամանակ մեր զորքերը զավթիչներից ամբողջովին մաքրեցին Կիևի, Ժիտոմիրի, Կիրովոգրադի, Զապորոժյեի, Դնեպրոպետրովսկի, Վիննիցայի, Նիկոլաևի, Կամենեց-Պոդոլսկի, Օդեսայի, Ռովնոյի, Չերնովիցիի մարզերը. մեր զորքերը հաջող մարտեր են մղում Տարնոպոլի, Ստանիսլավի, Լվովի և Վոլինի մարզերի ազատագրման համար և զարգացնելով հաջող հարձակումը, ազատագրում են Մոլդավական ՍՍՌ-ն ու Սովետական Ղրիմը: Սովետական միլիոնավոր քաղաքացիներ ազատագրված են ֆաշիստական գերությունից: Ուկրաինայի բոլոր հարստությունները՝ Կրիվոյ Ռոգի հանքերը, Նիկոպոլի մարգանեցը, ցորենն ու շաքարի ճակնդեղը վերադարձվում են մեր Հայրենիքին, ավելացվում է նրա տնտեսական և ռազմական հզորությունը:

Ստալինգրադից մինչև Պրուտ գետը ռա-

վետական զորքերի հաղթական հարձակման պատմության մեջ ամենահերոսական էջերը կապված են ջրային խոշոր բնագծերի անցման հետ: Գերմանացիների պաշտպանողական բոլոր հաշիվները կապված էին ամենից առաջ այդ ջրային բնագծերի ափերի ամրությունների հետ: Սակայն Կարմիր Բանակը, սպայական, սերժանտական և շարքային կազմի աճած զինվորական վարպետության շնորհիվ, մեր գեներալների ռազմա-տակտիկական արվեստի շնորհիվ տապալեց գերմանացիների հաշիվները և մեկը մյուսի ետևից խորտակեց գերմանական պաշտպանության գծերը Դնեպրի, Բուգի գետային բնագծերի վրա:

1944 թվի մարտի 26-ին Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը Սովետական Միության Մարշալ Կոնևի հրամանատարությամբ, անցնելով Ուկրաինայի հարավում ջրային վերջին բնագիծը՝ Դնեստրը, հասան Պրուտ գետի եզրով անցնող ՍՍՌՄ պետական սահմանին: Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը ապրիլի 8-ին 200 կիլոմետր տարածության վրա հասան Չեխոսլովակիայի և Ռումինիայի հետ ունեցած մեր պետական սահմանին:



Ամբողջ երկիրը ցնծությամբ դիմավորեց այդ բերկրալի և հուզիչ լուրը: Մոսկվան Հայրենիքի անունից 324 հրանոթների 24 համազարկով ողջունեց մեր պետական սահմանին հասած Ուկրաինական 1-ին և 2-րդ ռազմաճակատների հերոսական զորքերին: Փա՛ռք ու պատիվ մեր քաջարի ռազմիկներին: Թշնամուց մաքրված պետական սահմանի այդ առաջին հարյուրավոր կիլոմետրերը գերմանա-ֆաշիստական սրիկաներից մեր Հայրենիքի ամբողջ տերիտորիայի մոտալուտ ազատագրման համբավաբերն են, ֆաշիստական Գերմանիայի գալիք վերջնական ջախջախման համբավաբերը:

Կարմիր Բանակի հարձակվող զորամասերը հետապնդելով գերմանական բանակներին և նրանց դաշնակից ռումինական զորքերին, անցան Պրուտ գետը և մտան ռումինական տերիտորիան: Սովետական կառավարությունը հայտարարեց, որ ինքը չի հետապնդում ռումինական տերիտորիայի որևէ մասը ձեռք բերելու կամ Ռումինիայի գոյություն ունեցող հասարակարգը փոփոխելու նպատակը, որ սովետական զորքերի մուտքը Ռումինիայի սահմանները թելադրվում է միայն ռազմական ան-

հրաժեշտությամբ և հակառակորդի չարունակվող դիմադրությամբ: Կարմիր Բանակը թշնամուն հետապնդելու է մինչև նրա ջախջախումն ու կապիտուլյացիան:

Ձմեռային ճակատամարտերի ընթացքում մեծ հաղթանակ տարան Լենինգրադի և Վոլխովի ռազմաճակատների զորքերը: Նրանք խորտակեցին Լենինգրադի բլոկադայի «պողպատե օղակը», ջախջախեցին թշնամու զորքերին և նրանց 150—250 կիլոմետր հեռու շպրտեցին Լենինգրադից: Լենինի պանծալի քաղաքը, հերոս քաղաքը, փառքի քաղաքը ազատագրված է թշնամու բլոկադայից և հրետանային բարբարոսական ռմբակոծություններից: Հիտլերյան ավազակները հույսը դրել էին Լենինգրադի մոտակա «պողպատե օղակի» անառիկության վրա: Կարմիր Բանակը երկրի երեսից ջնջեց գերմանացիների բոլոր երկաթ-բետոնյա ամրությունները և կրկին անգամ ամբողջ աշխարհին ցույց տվեց, որ չկան անառիկ «օղակներ» և «պատնեշներ»: Կարմիր Բանակը թշնամուց համարյա ամբողջովին ազատագրեց Լենինգրադի և Կալինինի մարզերը ու մտավ Սովետական Էստոնիայի հողը:

Ձմեռային կամպանիայի ժամանակ գրե-



թե ամբողջովին ազատագրվեցին նաև Բելոռուսական ՍՍՌ-ի Գոմելի և Պոլեսյեի մարզերը և Վիտեբսկի ու Մոգիլյովի մարզերի մի շարք շրջանները:

Այս տարի մայիսի 1-ը մենք դիմավորում ենք այնպիսի իրադրության մեջ, երբ հիտլերյան Գերմանիայի դեմ վերջնական հաղթանակը ուրվագծվում է ավելի ու ավելի վառ ու պարզորոշ, երբ գնալով ավելի է մոտենում գերմանական զավթիչներից սովետական ամբողջ հողի լիակատար ազատագրման օրը, գերմանացիների կողմից Եվրոպայի ստրկացված երկրների տերիտորիայում մեր դաշնակիցների հետ միասին թշնամու դեմ համատեղ հարվածներ հասցնելու օրը, թշնամու դեմ ոչ միայն արևելքից, այլև արևմուտքից ու հարավից անողոք ու հարաճուն հարձակում սկսելու օրը:

Այս տարի մայիսի 1-ը մենք դիմավորում ենք ֆաշիստական բլոկի գնալով ավելի խորացող քայքայման և հիտլերյան Գերմանիայի եվրոպական թիկունքում գերմանական զավթիչներին ցույց տրվող հարաճուն դիմադրության պայմաններում:

Հիտլերյան ավազակների դաշինքը քայքայվում է մեր աչքի առաջ: Գերմանիան արդեն ի վիճակի չէ դիվանագիտական սովորական միջոցներով հնազանդության մեջ պահելու իր վասալներին: Նա զինված ուժով օկուպացրեց իր դաշնակից Հունգարիայի տերիտորիան, ինչպես առաջ օկուպացրել էր Իտալիան և Ֆինլանդիայի հյուսիսային մասը: Հասկանալով, որ Ուկրաինայի համար մղվող ճակատամարտի վերջը կլինի Գերմանիայի համար մղվող ճակատամարտի սկիզբը, անզոր՝ փոփոխելու պայքարի ընթացքը ճակատամարտերի դաշտերում, հիտլերականները աշխատում են ռազմաճակատը հեռացնել իրենց սեփական սահմաններից՝ ի հաշիվ իրենց «դաշնակիցների»: Դժվար չէ տեսնել, որ դա ոչ միայն չի ամրապնդում ֆաշիստների ռազմական և քաղաքական դիրքերը, այլ ընդհակառակը, է՛լ ավելի է թուլացնում դրանք: Միանգամայն ակներև է, որ գերմանացիները կանգ չեն առնի Հունգարիայի օկուպացնելու առաջ, որ Հունգարիայից հետո կարող է հասնել Ռումինիայի և Բուլղարիայի հերթը, որտեղ



արդեն փաստորեն լիովին տիրություն են անում գերմանական զորքերը:

Հիտլերականները գնալով ավելի քիչ կարող են վստահել իրենց գործակիցներին, որոնք ձգտում են ճողոպրել ավազակային շայկայից: Պատերազմի չորս տարիների հետևանքով հիտլերականները եվրոպական կոնտինենտում ձեռք չբերեցին ոչ մի նոր «դաշնակից»: Անկայուն եղան և նրանք, որոնք հույս ունեին գերմանացիների հետ բաժանելու հաղթանակի պտուղները, սակայն այժմ կանգնած են հիտլերյան Գերմանիայի հետ անխուսափելի պարտության դառն վիճակը բաժանելու հեռանկարի առաջ:

Իսկ այն երկրներում, որոնք գերմանա-ֆաշիստական զավթիչները օկուպացիայի ենթարկեցին պատերազմի հենց սկզբից՝ Ֆրանսիայում, Բելգիայում, Դանիայում, Հոլլանդիայում, Նորվեգիայում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Հարավսլավիայում, Հունաստանում գնալով ավելի է աճում գերմանական զավթիչներին ցույց տրվող կազմակերպված դիմադրությունը, որը ազգային ազատագրական լայն շարժման բնույթ է ստացել:

Եվրոպայի ռեակցիոն շրջանների մեջ ա-

ռաջներում տարածվել էր մի «տեսություն», թե տանկերի ու ինքնաթիռների դեմ, խիտ բնակեցված արդյունաբերական երկրների պայմաններում, ինչպիսիք հանդիսանում են եվրոպական կոնտինենտի երկրները անհնարին է պարտիզանական պատերազմ: Այդ «տեսությունը» առանձնապես ջերմ ընդունելություն գտավ լեհական էմիգրանտական կառավարության շրջանում, որը խանգարում էր պարտիզանական պայքարի ծավալմանը հենց այն պատրվակով, թե դա իբր թե զենքի ու մարդկանց անօգուտ վատնում է: Չեխոսլովակիայում էլ պայքարից խուսափելու անհրաժեշտության փաստարկումը «ավելորդ զոհերից» խուսափելու համար օգտագործվում էր արդարացնելու համար ուղղակի դավաճանությունը Հիտլերի այնպիսի ծառաների, ինչպիսին են Գախան և Տիսոն:

Սակայն ժողովուրդների հայրենասիրությունը, նրանց կամքն ու վճռականությունը խրական են դարձնում այն, ինչը շատ ռեակցիոն գործիչներ հայտարարում էին անիրագործելի:

Ստալինգրադի մոտ գերմանացիների ջախջախումից հետո, որը բեկման սկիզբ դրեց



Սովետական Միության Հայրենական պատերազմի և ամբողջ համաշխարհային պատերազմի ընթացքի մեջ, հուժկու խթան ստացավ նաև եվրոպական կոնտինենտի ստրկացված ժողովուրդների պարտիզանական պատերազմը: Պարտիզանական շարժումը առանձնապես հուժկու թափ ստացավ Հարավսլավիայում:

Հարավսլավիայի ժողովուրդները՝ սերբերը, խորվաթները, սլովենները, մակեդոնացիները և մյուսները միահամուռ կերպով և արիաբար հակահարված են տալիս օկուպանտներին ու նրանց մարիոնետներին: Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակի շարքերում կան երկրի բոլոր ազգությունների, հասարակական բոլոր խավերի ու քաղաքական բոլոր պարտիաների ներկայացուցիչներ:

Համաժողովրդական պարտիզանական պատերազմը, որ մղում է Հարավսլավիան, հիտլերականներից խլում է շատ հազարավոր զինվորներ և պատճառում է տեխնիկայի վիթխարի կորուստներ:

1943 թվին գերմանացիները, սովետագերմանական ռազմաճակատում կրած խոշորագույն պարտություններից դաղաղած, ֆաշիստական Իտալիայի կրախից և Հա-

րավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակի կողմից ցույց տրված հարաճուն հակահարվածից, որոշեցին ինչ էլ որ լինի ջախջախել Տիտոյի բանակը և դրանով իսկ ապահովել իրենց բալկանյան թիկուն-քը: Գերմանացիները Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակի դեմ նոր դիվիզիաներ շարժեցին Հունաստանից, Ալբանիայից, Բուլղարիայից և Հունգա-րիայից, այդ թվում նաև հունգարական ու բուլղարական նոր դիվիզիաներ: Բացի դը-րանից, բուն Հարավսլավիայում դավաճան-ներ Պավելիչի, Նեդիչի և մյուսների ձեռ-քերով կազմակերպվեցին զորամասեր և պայքարի նետվեցին ժողովրդա-ազատա-գրական բանակի դեմ:

1943 թվի վերջին կատաղի մարտեր ըն-կրավեցին հատկապես Խորվաթիայում: Հիտլերականների կողմից այդտեղ կա-տարվող «տոտալ» մոբիլիզացիան պայրույթ առաջ բերեց ժողովրդի մեջ, որը սկսեց գնալով ավելի վճռականորեն պաշտպանել Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակին: Տիտոյի զորքերը օկուպանտնե-րից ազատագրեցին ամբողջ մարզեր (Լի-կա) և շատ շրջաններ (Բանիա, Կորդուն), իսկ Դալմաթիայում Ադրիատիկ ծովի գը-



րեթե ամբողջ ծովափը: Մարտերը փոխա-դրվեցին Զագրեբի շրջանը և Բոսնիա, իսկ այնուհետև բորբոքվեցին Չեռնոգորիայում և Սլովենիայում: Պավելիչի բանդաները անողոք պարտություն կրեցին: Բացի տասնյակ հազարավոր զինվորներից ու սպաներից, որոնք ոչնչացվեցին հազարա-վոր գերմանացիների ու հունգարացիների հետ միասին, Պավելիչը կորցրեց Հարավ-սլավիայի ժողովրդա-ազատագրական բա-նակի կողմն անցած ամբողջ վաշտեր և գումարտակներ: Ընդհանուր գումարով Տիտոյի կողմն անցան տասնյակ հազարա-վոր զինվորներ և սպաներ:

Բանիա—Լուկա քաղաքի համար մարտե-րը շարունակվեցին 10 օր, ըստ որում Հա-րավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակը ոչնչացրեց այդտեղ գտնվող թըշ-նամու օդանավակայանները և տանկային պարկերը: Միայն Հարավսլավիայի ժողո-վըրդա-ազատագրական բանակի զորամա-սերի վրա թիկունքից Միխայլովիչի չետ-նիկների կատարած հարձակումը հիտլերա-կաններին փրկեց լիակատար ջախջախու-մից: Օգուլին քաղաքի մոտ (Լիկա) Հա-րավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակը շրջապատեց ու ոչնչացրեց թշնա-

մոտ 3 դիվիզիա: Հերոսական մարտեր են տեղի ունենում Սլովենիայում (որի կեսն արդեն ազատագրված է), Դալմաթիայում, Չեռնոգորիայում, Հերցեգովինայում, Բոսնիայում, Մակեդոնիայում և Սերբիայում: Այդ մարտերում ծնվում է նոր, ազատ Հարավսլավիան, որի համար միահամուռ կերպով մարտնչում են նրա բոլոր ժողովուրդները:

Գերմանական օկուպանտների դեմ հերոսական պայքար են մղում Հունաստանի ժողովուրդները: Պայքարն այստեղ ընդունում է ամենաբազմազան ձևեր՝ սկսած սաբոտաժից և դիվերսիոն ակտերից, մասսայական ցույցերից և գործադուլներից մինչև պարտիզանների զինված ելույթը:

Դիմադրության այդ շարժմանը մասնակցում են Հունաստանի բոլոր ազգությունները՝ հույները, մակեդոնական սլավոնները, թուրքերը, հրեաները և մյուսները: Այդ շարժմանը մասնակցում են տղամարդիկ ու կանայք, երիտասարդներ և ծերունիներ: Առանձնապես կարևոր դեր են կատարում կանայք, որոնք ցուցաբերում են բացառիկ արիություն: Դիմադրության շարժմանը մասնակցում են հունական հասարակության բոլոր խավերը՝ գյուղացի-



ները, բանվորները, ինտելիգենցիան, արհեստավորները, առևտրականները, պետական ծառայողները և պաշտոնյաները, ինչպես նաև Հունաստանի բոլոր քաղաքական պարտիաները՝ գյուղացիական, սոցիալիստական, կոմունիստական, լիբերալ, հելլենիստական:

Դիմադրության շարժումը ղեկավարվում է ազգային-ազատագրական ճակատի կենտրոնական կոմիտեի (ԿԱՄ) կողմից:

Պարտիզանական փոքրիկ, անջատ խմբերից առաջացել է մեծ, մարզված բանակ, որը կոչվում է «Էլաս» և իր շարքերում ունի 40—50 հազար մարդ: Այդ բանակի գլուխն են կանգնած հունական բանակի փորձված, ընդունակ նախկին սպաներ: Այդ բանակի գլխավոր հրամանատարն է գեներալ Ստեֆանո Սերաֆիսը: Դիմադրության շարժման մեջ մտնում են բանվորների և երիտասարդության կազմակերպությունները: Այդ շարժմանը միացել են առաջներում քաղաքական ոչ մի պարտիայի չմասնակցող տասնյակ հազարավոր մարտիկներ:

Այս տարվա փետրվարին «Էլաս» կազմակերպության և հունական մյուս «Էդես» զինված կազմակերպության միջև համա-

ձայնագիր ստորագրվեց իրար դեմ մղվող պատերազմական գործողությունները դադարեցնելու և գերմանացիների դեմ համատեղ պայքար մղելու մասին:

Ազգային-ազատագրական ճակատը միավորում է տասնյակ հազարավոր մարդ:

Պարտիզանական պայքարը արդեն ընդգրկում է ամբողջ երկիրը: Այդ պայքարը բորբոքվում է նաև այնպիսի մարզերում, ինչպես Պելոպոնեսը, որտեղ առաջ այդ պայքարը շատ թույլ էր: Պարտիզանական ջոկատները գործում և գրոհում են գլխավորապես կոմունիկացիաների վրա, առանձնապես Սալոնիկ—Աթենք և Սալոնիկ—Դեդեաղաչ (Ալեքսանդրոպոլիս) մագիստրալների վրա:

Աթենքից մինչև ալբանական սահմանը հաղորդակցության բոլոր ճանապարհները, բացառությամբ խոշոր կենտրոնների և դեպի սահմանագլուխ տանող ստրատեգիական մի քանի ճանապարհների, գտնվում են հունական հայրենասերների հսկողության տակ:

Հարավսլավիան և Հունաստանը, հատկապես առաջինը, մեզ վառ կերպով ցույց են տալիս բնորոշ գծերը այն պայքարի, որն այժմ օկուպացված երկրներում մղ-



վում է հիտլերյան Գերմանիայի դեմ: Այդ բնորոշ գծերն են՝ գնալով ավելի ուժեղացող զինված պայքարը օկուպանտների դեմ և ազգի բոլոր ուժերի հարաճուն համախմբումը այդ պայքարում, հայրենասիրական ազգային ճակատի շարժման ծավալումը:

Ազգային-ազատագրական պայքարը բորբոքվում է նաև Ֆրանսիայում:

Ֆրանսիան գերմանացիների կողմից օկուպացված ամենախոշոր երկիրն է: Ֆըրանսիայի բնական հարստությունների և մարդկային ռեսուրսների օգտագործումը պատերազմ մղելու համար էական տեղ է գրավում գերմանական իմպերիալիստների պլանների մեջ:

Սակայն օկուպանտների բոլոր միջոցառումների կենսագործումը, չնայած Լավալի դավաճանական քաղաքականությանը, գնալով ավելի մեծ հակահարված է ստանում ֆրանսիական ժողովրդի կողմից, որը պասիվ դիմադրությունից ակտիվ պայքարի է անցնում դահիճների դեմ: Ֆրանսիացիները ընդհանուր թշնամու դեմ Կարմիր Բանակի պանծալի հաղթանակներով ոգևորված, ուժեղացնում են Ֆրան-

ձայնագիր ստորագրվեց իրար դեմ մղվող պատերազմական գործողությունները դադարեցնելու և գերմանացիների դեմ համատեղ պայքար մղելու մասին:

Ազգային-ազատագրական ճակատը միավորում է տասնյակ հազարավոր մարդ:

Պարտիզանական պայքարը արդեն ընդգրկում է ամբողջ երկիրը: Այդ պայքարը բորբոքվում է նաև այնպիսի մարզերում, ինչպես Պելոպոնեսը, որտեղ առաջ այդ պայքարը շատ թույլ էր: Պարտիզանական ջոկատները գործում և գրոհում են գլխավորապես կոմունիկացիաների վրա, առանձնապես Սալոնիկ—Աթենք և Սալոնիկ—Դեդեագաչ (Ալեքսանդրոպոլիս) մագիստրալների վրա:

Աթենքից մինչև ալբանական սահմանը հաղորդակցության բոլոր ճանապարհները, բացառությամբ խոշոր կենտրոնների և դեպի սահմանագլուխ տանող ստրատեգիական մի քանի ճանապարհների, գտնվում են հունական հայրենասերների հսկողության տակ:

Հարավսլավիան և Հունաստանը, հատկապես առաջինը, մեզ վառ կերպով ցույց են տալիս բնորոշ գծերը այն պայքարի, որն այժմ օկուպացված երկրներում մղ-



վում է հիտլերյան Գերմանիայի դեմ: Այդ բնորոշ գծերն են՝ գնալով ավելի ուժեղացող զինված պայքարը օկուպանտների դեմ և ազգի բոլոր ուժերի հարաճուն համախմբումը այդ պայքարում, հայրենասիրական ազգային ճակատի շարժման ծավալումը:

Ազգային-ազատագրական պայքարը բորբոքվում է նաև Ֆրանսիայում:

Ֆրանսիան գերմանացիների կողմից օկուպացված ամենախոշոր երկիրն է: Ֆրանսիայի բնական հարստությունների և մարդկային ռեզերվների օգտագործումը պատերազմ մղելու համար էական տեղ է գրավում գերմանական իմպերիալիստների պլանների մեջ:

Սակայն օկուպանտների բոլոր միջոցառումների կենսագործումը, չնայած Լավալի դավաճանական քաղաքականությանը, գնալով ավելի մեծ հակահարված է ստանում ֆրանսիական ժողովրդի կողմից, որը պասիվ դիմադրությունից ակտիվ պայքարի է անցնում զավթիչների դեմ: Ֆրանսիացիները ընդհանուր թշնամու դեմ Կարմիր Բանակի պանծալի հաղթանակներով ոգևորված, ուժեղացնում են Ֆրան-

սխայում գերմանական ռազմական մեքենային հասցվող հարվածները:

Գերմանա-ֆաշիստական օկուպանտներին ցույց տրվող դիմադրության և նրանց դեմ մղվող պայքարին մասնակցում են բնակչության համարյա բոլոր խավերը: Այդ պայքարը ղեկավարվում է Ֆրանսիական դիմադրության ընդհատակյա խորհրդի կողմից, որը մոտ մեկ տարի առաջ ստեղծվել է Ֆրանսիայի տերիտորիայում և կապված է Ալժիրում գտնվող Ֆրանսիական Ազգային Ազատագրության Կոմիտեի հետ: Դիմադրության Խորհրդի մեջ մտնում են «Լիբերասիոն» («Ազատագրություն»), «Կոմբա» («Ճակատամարտ»), «Ֆրանտիրեր» («Ազատ հրաձիգ») հայրենասիրական կազմակերպությունների դելեգատները, Ֆրանսիայի վերածնված անլեգալ պրոֆմիությունների ներկայացուցիչները, ինչպես նաև ֆրանսիական քաղաքական 6 պարտիաների՝ ժողովրդական դեմոկրատների, դեմոկրատական միության, ռեսպուբլիկական ֆեդերացիայի, ռադիկալ-սոցիալիստների, սոցիալիստների և կոմունիստների ներկայացուցիչները:

Ֆրանսիայում գործում է նաև «Ազատ հրաձիգների և պարտիզանների ազգային



շտաբը», որը ղեկավարում է պարտիզանական ջոկատներն ու խմբերը:

Վերջին տարվա ընթացքում ազգային ազատագրական շարժումը Ֆրանսիայում զգալիորեն ամրապնդվեց և ուժեղացավ: Ազատագրական շարժման վերելքի դեմ մղվող պայքարում գերմանացիների անզորության վառ վկայությունն է հանդիսանում այն, որ արդեն ավելի քան մեկ տարի է ինչ նրանք չեն կարող հաղթահարել Վերին Սավոյայում գործող պարտիզանների շարժումը, որտեղ շատ շրջաններ մնում են ազատ տերիտորիա օկուպացված Ֆրանսիայում: Պարտիզանական շարժման օջախներ են երևան գալիս ոչ միայն Ալպերում, այլ նաև Վոգեզներում, Յուրայում, Պիրենեյան լեռներում, Սևեննյան անտառներում:

Վերջերս Ֆրանսիայի ընդհատակյա մամուլում հանրագումարային տվյալներ հրապարակվեցին ֆրանսիական պարտիզանների կիսամյա գործունեության մասին: Այդ մարտական ամփոփագրում ազատ հրաձիգների և պարտիզանների կենտրոնական շտաբը հաղորդում է, որ ֆրանսիացիները կատարել են 15 հազար զանազան մարտական գործողություն: Վեց ամսում

Նրանք ոչնչացրել են 3.000 հիտլերական և Վիշիի 500 ոստիկան, ոչնչացրել են 700 դավաճան: Տրանսպորտում կատարվել է ավելի քան հազար դիվերսիոն ակտ: Հայրենասերները պայթեցրել են մի շարք գործարաններ, էլեկտրոկայաններ, պահեստներ և այլն: Հարձակումներ են կատարվել բանտերի վրա և ազատագրվել են շատ հայրենասերներ: Ֆրանսիայում գերմանական տիրակալների դեմ դիմադրության ուժերը կազմակերպելու գործում հսկայական դեր է խաղում հայրենասիրական ընդհատակյա մամուլը: Նրա ընդհանուր տիրաժը արդեն անցել է ամսական 800.000 օրինակից: Երկրում հրատարակվում է ավելի քան 70 ընդհատակյա թերթ:

Օկուպանտները Ֆրանսիայում իրենց ըզգում են ինչպես պաշարված բերդում: Վախենալով հայրենասերների հարձակումներից, գերմանացիները շատ քաղաքներում բարիկադներով և լարափակոցներով շրջապատել են իրենց շենքերը: Այնուամենայնիվ այդ շենքերը հօդս են ցնդում՝ իրենց բեկորների տակ թաղելով գերմանական նվաճողներին:

Հիտլերականները իրենց անհանգիստ են զգում նաև փոքրիկ Բելգիայում: Օկու-



պանտներն ամենուրեք հանդիպում են դիմադրության: Բանվորները մասսայական գործադուլներով վիժեցնում են և թույլ չեն տալիս, որ բելգիացիներն ուղարկվեն գերմանական տաժանակրության: Գյուղացիները հրկիզում են գերմանացիների բռնագրաված մթերքները: Ինտելիգենցիան սաբոտաժի է ենթարկում իշխանությունների կարգադրությունները: Հոգևորականությունը կոչ է անում չենթարկվել օկուպանտներին: Բնակչության բոլոր խավերի ներկայացուցիչները մտնում են պարտիզանական ջոկատները, որպեսզի զենքը ձեռքին արագացնեն հայրենիքի ազատագրումը:

Հայրենասերների գործողությունները վաղուց արդեն համատարած բնույթ են կրում: Նրանց ղեկավարում է բելգիական տերիտորիայում ստեղծված Բելգիայի ազատագրության և անկախության պայքարի ազգային կոմիտեն: Պարտիզանական շատ ջոկատների թիվը ներկայումս այնքան մեծ է, որ ազատ հրաձիգները հաճախ մարտի են բռնվում հիտլերյան լավ զինված զորամասերի դեմ, ծանր կորուստներ պատճառելով նրանց:

Մերթ այստեղ, մերթ այնտեղ օկու-

պանները հայտարարում են պաշարողական դրություն, կատարում են մասսայական շուրջկալներ, ձերբակալություններ և այլն: Իսկ հաջորդ օրը նույն այդ շրջաններում նրանց վրա տեղում են բելգիական հայրենասերների նոր հարվածները: Ավարիաները և խորտակումները տրանսպորտում ամենօրյա երևույթ են դարձել երկրում: Պարտիզանները առանձնապես ուժեղ հարվածներ են հասցնում Գերմանիայի հետ կապ պահպանելու համար նշանակություն ունեցող գծերում:

Սովետա-գերմանական ռազմաճակատում գերմանացիների կրած վիթխարի կորուստների կապակցությամբ հիտլերյան հրամանատարությունը Բելգիայից իր շատ գնդերն ու դիվիզիաները փոխադրեց սովետա-գերմանական ռազմաճակատ: Բելգիական պարտիզանները օգտվում են այդ հանգամանքներից, ակտիվացնելով իրենց գործողությունը:

Չեխոսլովակիայում, Կարմիր Բանակի կողմից Չեխոսլովակյան ռեսպուբլիկայի սահմաններին հասնելու կապակցությամբ այնտեղ բարձրանում է մարտական ակտիվությունը, ծավալվում է պարտիզանական շարժումը: Վերջերս Չեխոսլովակյան կա-



ռավարությունը դիմեց ժողովրդին, կոչ անելով պասիվ դիմադրությունից անցնել ակտիվ դիմադրության: Այդ դիմումի մեջ ասված է. «Ստեղծեցեք զինված խմբեր և պարտիզանական ջոկատներ: Երբ հակառակորդը նահանջի մեր երկրից, անդեն ոչ մի մարդ անվտանգ չի լինի: Ազատագրության բանակը մոտենում է ձեզ: Հայրենասերնե՛ր, պայքարեցեք երջանի՛կ, ազա՛տ, անկա՛խ և դեմոկրատական Չեխոսլովակիայի համար՝ ազատ դեմոկրատական Եվրոպայում»:

Ժողովրդական շարժումը դարձել է ուժ: Նրա հետ հարկադրված են հաշվի նստելու: Նրա ղեկավարները հռչակ են ձեռք բերում: Անգլիայի վարչապետ Չերչիլլը այս տարվա մարտի 26-ի իր ռադիո-ելույթում ճիշտ նշեց, որ այդ ժողովրդական շարժումը ռեալ ավանդ է մտցնում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարի ընդհանուր գործի մեջ:

Մյուս կողմից Հարավսլավիայի և Լեհաստանի էմիգրանտական ռեակցիոն կառավարությունները գնալով ավելի են մեկուսանում ժողովրդից: Այդ տեսակետից բնորոշ է, որ, ինչպես հաղորդում է «Օբսերվեր» թերթը, լեհական ընդհատակյա

շարժման Լոնդոն ժամանած սպաները կատեգորիկ կերպով բողոքել են Լոնդոնում լույս տեսնող լեհական մի քանի թերթերի հակասովետական պրոպագանդայի դեմ: Նրանք ասում էին, որ այդ պրոպագանդան Լեհաստանում ձեռնտու է գերմանացիներին և դատապարտել են Լոնդոնում գտնվող լեհական միլիտարիստական և նացիոնալիստական տարրերի վարքագիծը:

Ազգային հայրենասիրական ճակատի շարունակ ծավալվող շարժման հաջողության համար անհրաժեշտ է դավաճանների դեմ ծավալել վճռական պայքար, որը միասնության պարտադիր պայմանն է. Այս բանը վառ կերպով վկայում է Պիեր Պյուշեի, Պետենի կառավարության նախկին մինիստրի դատավարությունը, որ մահվան դատապարտեց դավաճանին:

Իմպերիալիստական Գերմանիայի եվրոպական թիկունքը գնալով ավելի է չիկանում:

Սրընթաց շարժումը Կարմիր Բանակի, որը մի շարք տեղերում գերմանական օկուպանտներին արդեն դուրս է շպրտել Սովետական Միության սահմաններից և հետապնդում է նրանց, նոր խթան տվեց Եվրոպայի ստրկացված ժողովուրդների պայքա-



րի ուժեղացմանը ընդդեմ հիտլերյան բռնապետության: Կռվի նոր ալիքը ոգևորում է գերմանական բանակների թիկունքում պայքարող սլավոնական ժողովուրդներին: Սլավոն ժողովուրդների քաջարի զավակների արյունը, որ թափված է ընդհանուր թշնամու դեմ մղվող պայքարում, ընդմիշտ ամրապնդեց սլավոնական ժողովուրդներին վաղուց կապող եղբայրության կապերը: Ռուս մեծ ժողովրդի կողմից ոգեշնչված սլավոնական բոլոր ժողովուրդները ուրախությամբ սպասում են այն պահին, երբ գերմանացիների թիկունքում նրանց կողմից մղվող զինված պայքարը կմիաձուլվի Կարմիր Բանակի հաղթականորեն զարգացող հարձակման հետ: Կարմիր Բանակի մեծ հաղթանակները, որոնք հիտլերյան Գերմանիային կանգնեցրել են կատաստրոֆի եզրին, հակահիտլերյան կոալիցիայի արևելքից, արևմուտքից և հարավից հասցվելիք համատեղ հարվածների մոտեցումը ոգեշնչում են եվրոպական կոնտինենտի պայքարող ժողովուրդներին, դարձնելով այն ժայթքելու պատրաստ և գերմանական օկուպանտներին ու նրանց ստեղծած «Եվրոպայի նոր կարգը» թաղելու պատրաստ հրաբուխ:

***

Կարմիր Բանակի մեծ հաջողությունները հիտլերյան Գերմանիային հասցրին կործանման եզրին: Սակայն թշնամին դեռևս վերջնականապես չի ջախջախված: Նա մարտի է նետում վերջին ուժերն ու ռեզերվները, կառչում է սովետական հողի յուրաքանչյուր մետրին, յուրաքանչյուր նպաստավոր բնագծին:

«Հենց դրա համար, որքան էլ մեծ են մեր հաջողությունները,— ասում է ընկեր Ստալինը 1944 թվի փետրվարի 23-ի № 16 հրամանի մեջ,— մենք առաջվա նման պետք է լրջմտորեն գնահատենք թշնամու ուժերը, լինենք զգաստ, թույլ չտանք մեր շարքերում պարծենկոտություն, ինքնահանգստացում, անհոգություն»:

Ինչպես և պատերազմի առաջին տարիներին, մեր ժողովուրդը պետք է լարի իր բոլոր ուժերը և մոբիլիզացնի իր բոլոր հնարավորությունները թշնամուն արագորեն ջախջախելու համար:

Երբ մեր Հայրենիքի վրա կախվեցին մահացու վտանգի սև ամպերը, սովետական ամբողջ ժողովուրդը ընկեր Ստալինի կոչով պայքարի դուրս եկավ մեր Հայրենիքի պատվի, ազատության և անկախության



համար: Ամբողջ երկիրը վերածվեց մարտական միասնական ճամբարի: Թիկունքը և ռազմաճակատը ձուլվեցին ի մի: Մեր երկրի ժողովուրդները էլ ավելի ծավալեցին իրենց հզոր ուժերը և հերոսական անդուլ աշխատանքով սկսեցին կռել հաղթանակը: Շատ դժվարություններ հաղթահարեց ժողովուրդը: Պատերազմի սկզբում, գերմանացիների կողմից մի շարք կարևորագույն արդյունաբերական և գյուղատնտեսական շրջանների օկուպացման կապակցությամբ մեր երկիրը մետաղի, վառելանյութի, էլեկտրոէներգիայի լուրջ պակասություններ էր զգում: Մեր Կարմիր Բանակը գերմանականի համեմատությամբ այն ժամանակ ուներ ավելի քիչ տանկ, ինքնաթիռ, ականանետ, ավտոմատ զենք: Դժվար օրեր էին: Սակայն սովետական ժողովուրդը հոգեպես չընկճվեց: Լենինի-Ստալինի պարտիան կազմակերպեց հարյուրավոր ձեռնարկությունների գործարանների ու ֆաբրիկաների վերաբազավորումը արևմտյան մարզերից արևելյան մարզերը: Դրա հետ միասին հարկ եղավ արևելք տեղափոխել մի շարք գյուղատնտեսական կուլտուրաներ, ավելացնել ցանքատարածությունը: Դա վիթխարի մասշտաբի աշխատանք էր:

Այդ խնդիրը լուծվեց: Սակայն դա դեռ բավարար չէր: Անհրաժեշտ էր թշնամու ձեռքից խլել տանկերի ու ինքնաթիռների տեսակետից եղած քանակական գերակշռությունը: Պարտիան և կառավարությունը միջոցներ ձեռք առան գոյություն ունեցող ձեռնարկությունների արտադրողական կարողությունները ընդլայնելու և նոր կապիտալ շինարարության՝ դոմենյան հնոցների, գործարանների, ֆաբրիկաների, էլեկտրոկայանների լայն ծավալման համար: Աշխատավորության անձնուրաց աշխատանքի հետևանքով լիկվիդացվեց ռազմական տեխնիկայի տեսակետից գերմանացիների առավելությունը: Կարմիր Բանակը սկսեց ունենալ ավելի շատ տանկ, ինքնաթիռ, ականանետ ու ավտոմատ զենք, քան գերմանա-ֆաշիստական բանակը:

Մեր երկրի արտադրողական ուժերի անընդհատ աճման, ռազմական էկոնոմիկայի զարգացման ու ամրապնդման գործում ձեռք բերված վիթխարի հաղթանակների, ռազմաճակատին ցույց տրվող օգնության ուժեղացման մեծ աղբյուրը սովետական ժողովրդի՝ բանվոր դասակարգի, կոլխոզային գյուղացիության և սովետական ինտելիգենցիայի անձնազոհ աշխատանքն է:



Պատերազմից դեռ շատ առաջ մեր երկրում աշխատանքը դարձել էր պատվի գործ, փառքի գործ, արիության ու հերոսության գործ:

Պատերազմի տարիներին, երբ թշնամու արագ ու վերջնական ջախջախման խնդիրը դարձավ ամբողջ պետության և սովետական յուրաքանչյուր քաղաքացու գործունեության հիմքերի հիմքը, թիկունքում հերոսական աշխատանքային ջանքերը չտեսնված թափ ստացան: Համամիութենական սոցիալիստական մրցությունը իրոք դարձավ միլիոնավորների գործ: Ծագելով գրեթե երկու տարի առաջ մեր առաջավոր բանվորների նախաձեռնությամբ, այդ մրցությունը չթուլացող ուժով զարգանում է որպես համաժողովրդական շարժում գերմանա-ֆաշիստական զավթիչներին ջախջախելու համար, որպես Սովետական Հայրենիքի, իր առաջնորդ և Կարմիր Բանակի մեծ զորավար ընկեր Ստալինի նկատմամբ սիրով ու նվիրվածությամբ համաժողովրդական արտահայտություն:

Այդ մրցությունը ընդգրկեց բոլոր պրոֆեսիաների բանվորներին, ինժեներներին, տեխնիկներին, վարպետներին, կոլխոզնիկներին, անասնապահներին, տրակտորիստ-

ներին, կոմբայնավարներին, ՄՏ կայաննե-
րի ինժեներա-տեխնիկական աշխատողնե-
րին, սովխոզների բանվորներին ու բանվո-
րուհիներին, սովետական ծառայողներին:
Սոցիալիստական մրցումը հանդիսա-
ցավ ռազմաճակատին ցույց տրվող օգնու-
թյունն ուժեղացնելու հզոր աղբյուր:

Մեր սոցիալիստական արդյունաբերու-
թյունը Կարմիր Բանակին անհրաժեշտ քա-
նակությամբ և ավելի լավ որակով, քան
ունեն գերմանացիները, ապահովում է
մարտական տեխնիկա ու ռազմամթերք:
«ԿՎ» և «Տ—34» տանկերը, ինքնագնաց հր-
անոթները, գրոհիչ ինքնաթիռները, մայ-
րասլաց ռմբակոծիչները, կործանիչները,
գվարդիական ականանետները, հաուբից-
հրետանին, և այլն և այլն՝ ահեղ և թըշ-
նամու կողմից չգերազանցված սովետական
զենքը ստեղծված է ու բավականաչափ քա-
նակով արտադրվում է մեր բանվոր դասա-
կարգի, ինժեներա-տեխնիկական աշխատող-
ների և գործարանների ղեկավարների կող-
մից:

«Մեր արդյունաբերության բանվորները,
—ասում է ընկեր Ստալինը,— ժամկետից
շուտ կատարում և գերակատարում են
պետության սահմանած պլանները, գոր-



ծարկում են նորանոր գործարաններ, դո-
մնային հնոցներ և էլեկտրոկայաններ, ա-
զատագրված շրջաններում շատ կարճ
ժամկետներում վերականգնում են օկու-
պանտների ավերած ինդուստրիան: Բան-
վոր դասակարգի հերոսական ջանքերը էլ
ավելի են ամրապնդում Կարմիր Բանակի
ռազմա-նյութական բազան և դրանով իսկ
մոտեցնում են մեր վերջնական հաղթանա-
կի ժամը»:

1943 թվին չուգունի ձուլումը երկրում
ավելացավ 28 տոկոսով, պողպատինը 18
տոկոսով: Տանկերի արտադրությունը պա-
տերազմի ժամանակ ավելացավ մի քանի
անգամ, իսկ ինքնաթիռների արտադրու-
թյունը՝ երեք անգամ:

Կուզնեցկի մետալուրգիական գործարա-
նի բանվորները ընկեր Ստալինին ուղար-
կած Նոր տարվա ռապորտում գրում էին,
որ 1943 թվին նրանք 70 հազար տոննա
պողպատ և 3,5 անգամ ավելի շատ ֆերո-
ձուլվածքներ են ձուլել, քան նախորդ տա-
րին:

Նշանակալից է, որ Կուզնեցկի մետա-
լուրգիական կոմբինատում Պաշտպանու-
թյան Պետական Կոմիտեի փոխանցիկ Կար-
միր դրոշը 1943 թվին դոմնագործներին

հանձնվեց ինն անգամ, մարտենյան հնոցնե-
րի վրա աշխատողներին՝ յոթ անգամ և գլ-
լանողներին՝ 8 անգամ:

Հաջողությամբ ավարտելով 1943 թվի
պլանը, մեր բանվորները, ինժեներները,
տեխնիկները, վարպետները, ձեռնարկու-
թյունների կառուցողներն ու ղեկավարները
նոր պարտավորություններ ստանձնեցին
սոցիալիստական մրցության մեջ: Առաջին
ամիսները՝ 1944 թվի հունվարը և փետըր-
վարը կրկին անգամ ցույց տվին, որ մեր
բանվորների խոսքը չի բաժանվում գոր-
ծից:

Ածխագործները գերակատարեցին ընթա-
ցիկ տարվա մարտ ամսվա պլանը, անցյալ
տարվա մարտ ամսվա համեմատությամբ
ածխի հանույթը ավելացրին 31 տոկոսով:
1944 թվի առաջին եռամսյակում, անցյալ
տարվա համապատասխան ժամանակաշրջա-
նի համեմատությամբ չուգունի ձուլումը
ավելացավ 34 տոկոսով, պողպատինը՝ 38
տոկոսով, գլանվածքի արտադրությունը՝
36 տոկոսով: Մեծ հաջողությունների հա-
սան ինքնաթիռ ու տանկ կառուցողները:
Տանկային և ավիացիոն արդյունաբերու-
թյան աշխատողները գերակատարեցին



հունվարի և փետրվարի արտադրական
պլանները:

Վերածնվող Դոնբասի ածխահատները
մրցելով Բաքվի նավթագործների հետ,
վիթխարի հաջողություններ են ձեռք բե-
րում: «Արտյոմուգոլ» տրեստի № 19—20
հանքահորի ածխահատ ընկ. Աֆոնինը ըն-
թացիկ տարվա հունվար ամսին կատարեց
6 ամսվա արտադրական նորմա և վաստա-
կեց 17 հազար ռուբլի: Իսկ փետրվարի
19-ին օրվա առաջադրանքը կատարեց 3.530
տոկոսով ու այդ օրը վաստակած 4.200
ռուբլին հանձնեց հայրենիքի պաշտպանու-
թյան ֆոնդին:

Զինագործարանի այն ցեխում, որի պետն
է ընկ. Անտոնովը, ընկերներ Լունչևը, Տո-
կարյովը և Պեչյոնկինը, որոնցից յուրա-
քանչյուրը գործարանում անընդհատ աշ-
խատում է ավելի քան կես դար, 8-ի փո-
խարեն կազմակերպեցին 5 հոգուց բաղկա-
ցած բրիգադա և ամեն օր նորման կատա-
րում են 120—140 տոկոսով: Սոցիալիստա-
կան արդյունաբերության այսպիսի առա-
ջավորների թիվը մեր երկրում հարյուր
հազարների է հասնում:

Աշխարհի և ոչ մի երկրում հնարավոր
չէ աշխատանքային այնպիսի վերելք, ինչ

պես մեր սովետական երկրում, որտեղ բանվոր դասակարգը գիտե, որ նրա աշխատանքը ավանդ է իր շահերի, իր պետության անկախության ու ազատության համար, ատելի թշնամու՝ գերմանա-ֆաշիստական զավթիչների ջախջախումն արագացնելու համար մղվող պայքարի գործում:

Մեր Հայրենիքի բանվոր դասակարգի համամիութենական մրցության զարգացման մեջ նոր աստիճան է կոմերիտական-երիտասարդական բրիգադների ստեղծումը: Ընթացիկ տարվա փետրվարի վերջին երկրի ձեռնարկություններում արդեն կար 60 հազար կոմերիտական-երիտասարդական բրիգադա: Աշխատանքային օրը խտացնելու, որակավորումը բարձրացնելու, բազմահաստոց սպասարկման անցնելու հաշվին աշխատանքի այլ տեղամասերում օգտագործելու համար ազատվեցին տասնյակ հազարավոր բանվորներ:

Մեր երկրի բանվորները ոչ միայն գերակատարում են արտադրական առաջադրանքները, այլև պայքարում են միջոցների և նյութերի խնայողության համար, մտցնում են տասնյակ հազարավոր ռացիոնալիզատորական առաջարկություններ:



«Կրասնոյե սորմովո» գործարանում 1943 թվին մտցված է 5600 առաջարկություն և, արտադրության մեջ կիրառված այդ առաջարկությունների միայն կեսը տվեց 24 միլիոն 846 հազար ռուբլու խնայողություն:

Այն գործարանում, որի դիրեկտորն է ընկ. Ֆոմինը, վերջին ժամանակներս իրացվել է բանվորների 382 առաջարկություն, որոնք տալիս են տարեկան մեկ միլիոն 680 հազար ռուբլու խնայողություն:

Սովետական Միության բանվոր դասակարգը այսպես է օգնում հաղթանակող Կարմիր Բանակին, ռազմաճակատին:

Մայիսի մեկի նախօրյակին բանվոր դասակարգը ոգեշնչված Կարմիր Բանակի պատմական հաղթանակներով, էլ ավելի է բարձրացնում մրցության դրոշը: Մոսկվայի «Կրասնի պրոլետարի» դազգահաշինական Լենինի շքանշանակիր գործարանի կոլեկտիվը ստանձնեց լրացուցիչ պարտավորություններ.

1. Առաջին եռամսյակում պլանից դուրս տալ 50 դազգահ, ապրիլին 20 դազգահ և երկրորդ եռամսյակում ևս 50 դազգահ:

2. Թաղամթերքի ցեխերում երկրորդ եռամսյակում արտադրանքը առաջին ե-

տամսյակի համեմատությամբ ավելացնել 10 տոկոսով:

3. Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 15 տոկոսով և արտադրանքի ինքնարժեքն իջեցնել 10 տոկոսով և այլն:

Կրասնո պրոլետարցիները բոլոր բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին, արդյունաբերության և տրանսպորտի աշխատողներին կոչ արեցին հետևել իրենց օրինակին, կազմակերպել նախամայիսյան մրցություն, ստանձնել լրացուցիչ պարտավորություններ և պատվով կատարել դրանք:

Կրասնո պրոլետարցիների դիմումը լայն արձագանք գտավ Սովետական Միության բանվոր դասակարգի մեջ: Ստալինի անվան ավտոգործարանի բանվորները, Բաքվի նավթագործները, Մագնիտոգորսկի մետալուրգները և մյուսները ստանձնում են նորանոր պարտավորություններ: Նախամայիսյան մրցության մեջ մեր երկրի բանվոր դասակարգը տանում է արտադրական հիանալի հաղթանակներ և իր անձնազոհ աշխատանքով ուժեղացնում է ռազմաճակատին ցույց տրվող օգնությունը:

Ընկեր Ստալինը գնահատելով բանվոր



դասակարգի աշխատանքային սխրագործությունները, ասում է.

«Եթե այժմ տանկերի, ինքնաթիռների, ականանետների, ավտոմատների քանակի տեսակետից թշնամու վաղեմի գերակշռությունը լիկվիդացված է, եթե մեր բանակը այժմ լուրջ պակաս չի զգում սպառազինության, ռազմամթերքի, հանդերձանքի, ապա այդ բանում ամենից առաջ պետք է տեսնել մեր բանվոր դասակարգի ծառայությունը»:

Մեր երկրի բանվոր դասակարգը ամենևին էլ չի արբենում իր հաջողություններով: Սովետական բանվորները, ինժեներներն ու տեխնիկները գիտեն, որ նրանց սպասում են վիթխարի խնդիրներ և լուրջ դժվարություններ: Մեզ անհրաժեշտ է ամենակարճ ժամկետում վերականգնել թշնամու կողմից ավերված ինդուստրիան գերմանական օկուպացիայից ազատագրված շրջաններում, անհրաժեշտ է գործարկել նոր կառուցվող և վերակառուցվող տասնյակ ձեռնարկություններ, հանքահորեր, էլեկտրոկայաններ: Անհրաժեշտ է ապահովել թողարկվող արտադրանքի անշեղ ավելացումը և աշխատանքի արտադրողականության աճը, պետք է ձգտել որ բոլոր նոր բանվորները

նովին տիրապետեն իրենց գործի տեխնիկային։ Դա բոլոր բանվորներից, ինժեներներից ու տեխնիկներից կպահանջի լարել իրենց բոլոր ջանքերը և անդուլ կերպով կատարելագործել այն գործը, որը հանձնարարված է նրանց հայրենիքի կողմից։

1944 թվի մայիսի մեկի օրը մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը դիմավորում է վիթխարի նվաճումներով և հաղթանակներով։

Մեր գյուղացիությունը գյուղի պատմության մեջ առաջին անգամ ցույց տվեց համաժողովրդական և ընդհանուր պետական շահերի բարձր գիտակցում։ Չնայած պատերազմի ժամանակվա դժվարություններին, աշխատող ուժի, մեքենաների և քաշող ուժի զգալի կրճատմանը կոլխոզային գյուղում, գյուղատնտեսության աշխատողները կարողացան մեր բնակչության և բանակին ապահովել անհրաժեշտ պարենամթերքով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով։ Այդ բանում արտահայտվեց կոլխոզային կարգերի ուժն ու կենսունակությունը, կոլխոզային գյուղացիության հայրենասիրությունը։

1943 թվին գյուղատնտեսության մեջ ծավալված Համամիութենական մրցու-



թյունում երկրի շատ երկրամասեր, մարզեր ու ռեսպուբլիկաներ մեծ հաջողություններ ձեռք բերին և հաղթող դուրս եկան։ ՍՍՌՄ Ժողկոմսովետը քննեց գյուղատնտեսության մեջ ծավալված մրցության 1943 թվի արդյունքները և Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշներ ու դրամական մրցանակներ տվեց Մոսկվայի մարզին՝ ՄՏ կայանների լավագույն աշխատանքի համար, Կալինինի մարզին՝ բարձր բերքի համար, Իվանովոյի մարզին՝ կոլխոզային անասնաբուծության վերելքի համար, և մի շարք այլ մարզերի ու ռեսպուբլիկաների՝ գյուղատնտեսության մեջ ձեռք բերած հաջողությունների համար։ Պաշտպանության Պետական Կոմիտեի կարմիր դրոշների հանձնումը պետական բարձր պարգև է այդ մարզերի կոլխոզնիկներին և գյուղատընտեսության բոլոր աշխատողներին, որ նրանց ոգեշնչում է աշխատանքային նորանոր սխրագործությունների։

Կալինինի մարզի կոլխոզները բարձր բերք ստացան. նրանք միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարից ստացան 12,9 ցենտներ հացահատիկ, պլանով նախատեսված 11 ցենտների դիմաց, 4,1 ցենտներ

վուշի քուսաթել, պլանով նախատեսված 3,5 ցենտների դիմաց. պետական պարտավորությունները նրանք կատարեցին ժամանակին և պլանից դուրս վաճառեցին 4,5 միլիոն փութ հաց: Այդ հաջողությունները մեր կոլխոզնիկների անձնազոհ աշխատանքի արդյունքն են:

Մեր երկրի շատ ՄՏ կայաններ պատվով են կատարում իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ, մեծ օգնություն են ցույց տալիս մեր կոլխոզներին: Այսպես, Մոսկվայի մարզի ՄՏ կայանները 1943 թվի տարեկան պլանը կատարեցին 123 տոկոսով: Մարզի առանձին ՄՏ կայաններ աշխատանքում ձեռք բերին է՛լ ավելի վառ ցուցանիշներ: Օրինակ, Կոմսոմոլսկայայի ՄՏ կայանը 1943 թվին արտադրական առաջադրանքը կատարեց 180 տոկոսով և խնայեց մոտ 11 հազար կիլոգրամ վառելանյութ: ՄՏ կայանում չկար ոչ մի բրիգադա, որը չխնայեր վառելանյութ և չգերակատարեր 1943 թվի արտադրական առաջադրանքը:

Սակայն մի շարք մարզերի շատ կոլխոզներ, սովխոզներ ու երկրի ՄՏ կայաններ 1943 թվին աշխատեցին անբավարար:

Կոլխոզային գյուղացիության, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների,



սոցիալիստական հողագործության բոլոր աշխատողների խնդիրն է՝ գործի դնել բոլոր ջանքերը, եռանդը, գիտելիքներն ու փորձը, 1944 թվին բերքատվությունը ամեն կերպ բարձրացնելու և հացահատիկի ու գյուղատնտեսական մյուս կուլտուրաների համախառն արտադրանքը ավելացնելու համար:

Կոլխոզային գյուղացիությունը պետք է օգտագործի մեր գյուղում եղած բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները՝ բարձր բերք ստանալու համար: Չպետք է թույլ տալ, որ կրկնվի անցյալում մի շարք կոլխոզներում եղած ագրոտեխնիկայի պարզեցումը, պետք է սահմանված ժամկետներին և ագրոտեխնիկական բարձր մակարդակով կատարել ցանքի աշխատանքները և մշտական խնամք կազմակերպել ցանքի նկատմամբ: Անհրաժեշտ է, որ ՄՏ կայանների ու սովխոզների մեխանիզատորական կադրերը լավ տիրապետեն իրենց գործի տեխնիկային, պետք է է՛լ ավելի ամրապնդել կարգապահությունը և կարգ ու կանոն կոլխոզներում, ՄՏ կայաններում և սովխոզներում:

Հայրենական պատերազմի ահեղ օրերին սովետական ինտելիգենցիան մինչև այժմ

չտեսնված խանդավառությամբ է իր բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարի սուրբ գործին:

«Սովետական ինտելիգենցիան անձնվիրաբար աշխատում է մեր երկրի պաշտպանության գործի համար, անընդհատ կատարելագործում է Կարմիր Բանակի սպառազինությունը, արտադրության տեխնիկան և կազմակերպումը: Նա օգնում է բանվորներին և կոլխոզնիկներին՝ արդյունաբերության և գյուղատնտեսության բարձրացման գործում, առաջ է մղում պատերազմի պայմաններում սովետական գիտությունն ու կուլտուրան:

Դա պատիվ է բերում մեր ինտելիգենցիային» (Ստալին):

Մեր ինժեներներն ու կոնստրուկտորները առաջնակարգ զենք են տալիս Կարմիր Բանակի համար: Ինքնաթիռների կոնստրուկտորներ ընկերներ Իլյուշինը, Լավոչկինը և Պետլյակովը հայտնի են ամբողջ աշխարհին: Գյուտարար ընկ. Պետրովը, կոնստրուկտոր ընկ. Կոստյուկովը ստեղծեցին սպառազինության մինչև այժմ չըտեսնված տեսակներ:

Սովետական գյուղատնտեսները և գիտ-



նականները ուղիներ և միջոցներ են որոնում ավելի բարձր բերքատվության հասնելու, պատերազմի ժամանակվա դժվարությունները գյուղատնտեսության ասպարեզում հաղթահարելու համար: Ստալինյան մրցանակի լաուրեատներ, ակադեմիկոսներ Լիսենկոն, Պրյանիշնիկովը և մյուս գիտնականները այդ տեսակետից մեծ ծառայություն են մատուցել: Ակադեմիկոս Լիսենկոն մշակել է պալարագագաթներով կարտոֆիլ ցանելու մեթոդը:

Սովետական բժիշկները անձնվիրաբար պայքարում են Կարմիր Բանակի վիրավոր մարտիկների փրկության և նրանց շարք վերադարձնելու համար: Հանրածանոթ է, որ հոսպիտալային գործը, վիրավորների բուժումը մեր երկրում դրված է ավելի լավ հիմունքների վրա, քան որևէ այլ երկրում: Շարքը վերադարձած մարտիկների ու սպաների տոկոսը, նրանց հաջող բուժման հետևանքով, կազմում է 70, մի բան, որ չկա աշխարհի և ոչ մի բանակում: Ակադեմիկոս Բոգոմոլեցը վերքերի բուժումը և ջարդվածքի դեպքում ոսկորի միացումը արագացնող հիանալի պրեպարատի ստեղծման համար արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր

կռվում: Ակադեմիկոս Բուրդենկոն նոր ուղիներ է բաց արել ուղեղի վնասվածքները բուժելու ասպարեզում: Բուժման նոր եղանակը հիանալի արդյունքներ է տալիս: Ուղեղային վնասվածքների ծանր բարդությունների դեպքում մահացության տոկոսը 70-ից իջնում է 10-ի: Ակադեմիկոս Բուրդենկոյի մեթոդը և ակադեմիկոս Բոգոմոլեցի պրեպարատը լայն տարածում են գտել բուժական-հոսպիտալական պրակտիկայում և անգնահատելի օգնություն են ցույց տալիս մեր ռազմիկներին:

Սովետական գրողները հայրենական պատերազմի օրերին ստեղծել են հիանալի երկեր, որոնք պատմում են սովետական ժողովրդի և նրա Կարմիր Բանակի ուժի ու հերոսության մասին: Այնպիսի գրքերում, ինչպես Վ. Վասիլևսկայայի «Ծիածանը», Լ. Սոբոլևի «Ծովային հոգին», Բ. Գորբատովի «Անընկճելիները», Մ. Շոլոխովի «Նրանք մարտնչում էին հայրենիքի համար», Վ. Գրոսմանի «Ժողովուրդն անմահ է», Վ. Ինբերի «Պուլկովոյի միջօրեականը», Ն. Տիխոնովի, Լ. Պերվոմայսկու, Ա. Կուլեշովի պոեմներն ու օչերկները և շատ այլ երկերում ցուցադրված են սովետական մարդկանց մեծությունը և ուժը,



նրանց նպատակների ազնվությունն ու վեհությունը, նրանց անմար ատելությունը դեպի գերմանական ստոր զավթիչները:

Սովետական ինտելիգենցիան Սովետական Միության բոլոր աշխատողների հետ միասին առաջիկայում ևս իր բոլոր ուժերն ու գիտելիքները կնվիրաբերի մեր քաջարի Կարմիր Բանակին աջակցություն ցույց տալու գործին:

Սովետական ամբողջ ժողովուրդը միասնական է իր ձգտումների մեջ՝ վերջնականապես ջախջախելու թշնամուն:

Սովետական ժողովուրդը Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ հսկայական աշխատանք է կատարել և կատարում է գերմանական օկուպացիայից ազատագրված շրջաններում տնտեսության ու կուլտուրայի վերականգնման ուղղությամբ:

Գերմանական օկուպացիայից ազատագրված շրջաններում տնտեսության վերականգնման գծով ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից կոմիտեի հաշվետվության մեջ բերված են 1943 թվի օգոստոսի 21-ից մինչև 1944 թվի հունվարի մեկը տնտեսության վերականգնման գծով կատարված աշխատանքի հիանալի արդյունքները: Այդ աշխատանքը շարունակվում է հարաճուն ուժով: Բոլո-

րովին վերջին ժամանակներս Ենակիևո քաղաքում վերականգնվեց և աշխատում է թվով երրորդ դոմենյան հնոցը: Ստալինգրադում, որտեղ Կարմիր Բանակը մեծ հաղթանակ տարավ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ, «Կրասնի օկտյաբր» գործարանում վերականգնվեց և մարտի 28-ից գործարկվեց բլյումինգը: Դա նշանակում է հազարավոր լրացուցիչ տոննա մետաղ տալ հարձակվող Կարմիր Բանակի սպառազինության համար:

Մեր ժողովրդի առաջ է՛լ ավելի հոյակապ խնդիրներ են կանգնում այն կապակցությամբ, որ Կարմիր Բանակը ավարտում է սովետական Ուկրաինայի ազատագրումը գերմանական զավթիչներից, թշնամուն քշում է Մոլդավիայից, Բելոռուսիայից և Մերձբալթիկայից: Վերածնել ածխա-մետալուրգիական Դոնբասը, Կրիվոյ Ռոգը և հարավի մետալուրգիան, կոլխոզները, սովխոզները և ՄՏ կայանները Ուկրաինայի շատ հարուստ հողերում, ամբողջովին վերականգնել երկաթուղային բոլոր մագիստրալները և սևծովյան նավահանգիստները՝ սա համաժողովրդական մեծ գործ է, որ ազատագրված շրջանների աշխատավորության հետ միասին կկատարի սովետական ամբողջ ժողովուրդը:



Հայրենական պատերազմում Կարմիր Բանակի ձեռք բերած մեծ հաղթանակները հնարավոր են դարձել Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամության շնորհիվ: Մեր երկրի բոլոր ժողովուրդները, մարտական հզոր համագործակցությամբ համախմբված, հերոսաբար պայքարում են մեր սոցիալիստական Հայրենիքի համար: Ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ ազատագրվում են Սովետական Ուկրաինայի, Մոլդավիայի, Բելոռուսիայի հողերը և նրանց ժողովուրդները ազատվում են թշնամու գերությունից:

1944 թվի մայիսի մեկը մենք դիմավորում ենք փայլուն հաղթանակներով: Կարմիր Բանակը ջախջախում է թշնամուն ռազմաճակատում: Սովետական ժողովուրդը աշխատանքային հիանալի հաղթանակներ է տանում թիկունքում: Այդ հաղթանակների համար մենք պարտական ենք մեր պանծալի Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիային, մեր առաջնորդ, Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինին:

Այդ հաղթանակները մեծ են, սակայն

մեծ են նաև այն դժվարությունները, որոնք մենք պետք է հաղթահարենք: Կարմիր Բանակը հաջողությամբ ավարտում է մեր երկրից թշնամուն ամբողջովին վռնդելու գործը և կհետապնդի ու կջախջախի թշնամու զորքերին մինչև նրանց լիակատար ջախջախումը և կապիտուլացիան: Թշնամին մեր հարձակվող զորքերին ցույց կտա է՛լ ավելի կատաղի դիմադրություն: Սակայն այդ դիմադրությունը պետք է կոտրվի և կկոտրվի: Իսկ դրա համար պահանջվում է հետագայում ևս անդուլ կերպով լարել մեր ուժերը ռազմաճակատում և թիկունքում:

Սովետական մարդիկ աշխատավորության մարտական ուժերի ստուգատեսի Միջազգային օրը դիմավորում են գիտակցելով այդ խնդիրները և դրանք լուծելու պատրաստակամությամբ:

Կեցցե՛ մայիսի մեկը՝ աշխատանքի ու պայքարի միջազգային օրը:

Կեցցե՛ մեր պանծալի Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիան՝ մեր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը:

Կեցցե՛ մեր բարեկամ և ուսուցիչ, մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինը:

(«Սպուտնիկ ագիտատորա» № 7—8, 1944 թ.)



# ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ
## (ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՕՐԵՐԻՆ)

«Մամուլը միակ զենքն է, որի օգնությամբ պարտիան ամեն օր, ամեն ժամ խոսում է բանվոր դասակարգի հետ, նրան, իրեն հարկավոր լեզվով: Պարտիայի և դասակարգի միջև հոգևոր թելեր ձգելու ուրիշ միջոցներ, մի ուրիշ այդպիսի ճկուն ապարատ բնության մեջ չկա»:

*Ի. ՍՏԱԼԻՆ*

Մայիսի 5-ը բոլշևիկյան մամուլի օրն է: Այդ օրը կապված է մեր պարտիայի մարտական օրգան «Պրավդայի» անվան հետ: Բոլշևիկյան մամուլի օրը առաջին անգամ տոնվել է 1914 թվի մայիսի 5-ին, լենինյան-ստալինյան «Պրավդայի» երկրորդ տարեդարձին:

Ռուսաստանում բանվորական մամուլը ծնունդ առավ այն ժամանակ, երբ սկսվեցին բանվորական մասսայական շարժումնե-

րը: Նա հանդես եկավ 1895—1896 թվերի պետերբուրգյան հռչակավոր գործադուլների շրջանում: Վ. Ի. Լենինը «Ռուսաստանի բանվորական մամուլի անցյալից» հոդվածում գրում է.

«Հենց այդ ժամանակն էլ բառիս բուն իմաստով հանդիսանում է բանվորական մամուլի երևան գալու ժամանակը»: (Վ. Ի. Լենին, Երկ. ժող. հատոր 12, էջ 343):

Լենինի ղեկավարությամբ 1895 թվին կազմակերպված «Բանվոր Դասակարգի Ազատագրման Պայքարի Միությունը» մինչև 70 զանազան թերթիկներ հրատարակեց, որոնք լայնորեն տարածվեցին բանվորական մասսաների մեջ: 1896 թվին «Պայքարի Միությունը» մայիսմեկյան լոզունգները տպագրեց 2000 օրինակով և տարածեց Պետերբուրգի գործարաններում ու ֆաբրիկաներում:

1900 թվի դեկտեմբերի 24-ին Ժնևում լույս տեսավ լենինյան «Իսկրայի» 1-ին համարը: Այս նոր տիպի թերթ էր, որը հանդիսանում էր նոր տիպի պարտիայի օրգանը: Լենինը սովորեցնում էր, որ նոր տիպի «թերթը ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ ու կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ» (Լենին, Երկ. հատոր 4, էջ 477):



Լենինյան «Իսկրան» դարձավ Ռուսաստանի բանվորական կազմակերպությունների մարտական կենտրոնը: Նա մշակեց բանվորական պարտիայի ծրագիրն ու տակտիկան, դաստիարակեց պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների այնպիսի կադրեր, ինչպիսին ժողովրդական հերոս Իվան Վասիլյևիչ Բաբուշկինն էր: «Իսկրան» նախապատրաստեց պարտիայի երկրորդ համագումարը, որը շրջադարձային կետ հանդիսացավ բանվորական շարժման մեջ:

«Իսկրան» 52-րդ համարից հետո անցավ մենշևիկների ձեռքը:

1905 թվի հունվարի 4-ին լույս տեսավ «Վպերյոդ»-ի 1-ին համարը. այս թերթը նախապատրաստեց բոլշևիկյան 3-րդ համագումարը, միևնույն ժամանակ ձևակերպեց բոլշևիզմի ծրագրային տակտիկական ու ստրատեգիական մի շարք կարևոր հարցեր:

1905 թվի ռևոլյուցիայի ժամանակ երևան եկան «Պրոլետար» (3-րդ համագումարի որոշմամբ սա է մեր պարտիայի կենտրոնական օրգանը), «Նովայա Ժիզն» (1905 թ. աշնանը), իսկ 1906 թվի գարնանը «Վոլնա», «Էխո» թերթերը:

1910 թվի դեկտեմբերի 29-ին լույս տե-

տավ պետական դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի օրգան «Զվեզդա» թերթը, որը 1911 թվի աշնանից ամբողջովին անցավ բոլշևիկների ձեռքը:

1912 թվի Լենայի դեպքերը խոշոր վերելք առաջացրին Ռուսաստանում: Եվ այդ շրջանում ծնվեց բանվորական մասսայական թերթ, մեր պարտիայի կենտրոնական կոմիտեի մարտական օրգան «Պրավդան»:

***

Մամուլը չտեսնված թափով աճեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո: Մեր պարտիան ու կառավարությունը ստեղծեցին տնտեսական ու բարոյական բոլոր պայմանները սովետական երկրի գիր ու գրականության զարգացման և տարածման համար: Մամուլը ՍՍՌՄ-ում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդայի հզոր զենքն է, բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության քաղաքականության տարածողը լայն մասսաների մեջ: Ընկեր Ստալինն ասել է.

«Մամուլը պետք է աճի ոչ թե օրեց-օր, այլ ժամ առ ժամ,— այդ մեր պարտիայի ամենասուր և ամենաուժեղ զենքն է»:

Մեզանում թերթերի տիրաժը 1913 թվի համեմատությամբ աճել է մոտ տասնհինգ



անգամ: Գրքեր տպագրվում են ՍՍՌՄ ժողովուրդների 111 լեզուներով (1913 թվին միայն 49 լեզվով): 1913 թվին ցարական Ռուսաստանում հրատարակվում էր 899 թերթ՝ 2·729 հազար ընդհանուր տիրաժով, իսկ 1937 թվին Սովետական Միության մեջ հրատարակվում էր 9 հազարից ավելի թերթ՝ 39 միլիոն ընդհանուր տիրաժով:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը ՍՍՌՄ-ում հրատարակված են ավելի քան 400 միլիոն օրինակ տիրաժով: «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը» միայն 1938 թվի ընթացքում տարածվեց 14 միլիոն օրինակով:

Մոսկվայի Գորկու անվան «Պեչատնի դվորի» դիրեկտորը հետաքրքիր հաշիվներ է արել: Նրա ասելով, եթե Լենինի երկերի չորրորդ հրատարակության բոլոր 40 հատորի տիրաժը հավաքելու լինենք իրար վրա, կստացվի վեց հարկանի մի վիթխարի տուն: Հատորների տպագրության համար անհրաժեշտ է 205 հազար կիլոմետր թուղթ: Այդ թղթով կարելի է երկրագունդը հասարակածով փաթաթել հինգ անգամ:

***

«Պրավդայի» հիմնադրումը նշանակալից դեպք հանդիսացավ բոլշևիզմի հերոսական

պայքարի պատմության մեջ: Այդ առաջին ամենօրյա, մասսայական բանվորական թերթն էր մեր երկրում: Նա հիմնվել է Լենինի ցուցումի համաձայն, Ստալինի, Օլմինսկու և Պոլետաևի նախաձեռնությամբ:

«Պրավդան» իր գոյության ամբողջ ժամանակաշրջանում մասսաների հետ միասին պայքարել է ժողովրդի արմատական շահերի համար, նրա էջերում իր ամբողջ ուժով հնչել է բոլշևիկյան ճշմարտության ձայնը, նա միշտ պատվով է կատարել կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի և կազմակերպչի լենինյան պահանջը:

«Պրավդան» անգնահատելի դեր է խաղացել նախահոկտեմբերյան շրջանում բոլշևիկյան պարտիայի կառուցման ու ամրապնդման, աշխատավոր մասսաներին Լենին-Ստալինի փառապանծ պարտիայի շուրջը համախմբելու, նրանց հոկտեմբերյան վճռական մարտերին նախապատրաստելու գործում: Այդ պատճառով էլ ընկեր Ստալինը ասել է. «Պրավդան»՝ այդ մի հիմք էր, որ դրվեց բոլշևիկների 1917 թվի հաղթության համար:

Հոկտեմբերի օրերին «Պրավդան» հանդես եկավ որպես սովետական կարգերի



կառուցման, ամրապնդման ու հետագա զարգացման կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի և կազմակերպչի դերում: «Պրավդան» իր ստեղծման առաջին իսկ օրերից պարտիայի շուրջն է համախմբում բանվորական լայն մասսաներին, պայքարի կոչում նրանց սոցիալիստական ռևոլյուցիայի համար: Այդ ժամանակ «Պրավդան» խմբագրում էին Լենինը և Ստալինը: Նրանք բացառիկ նշանակություն էին տալիս գրականագետ կադրերի ստեղծմանը: Առաջին իսկ համարից «Պրավդայի» խմբագրությունը կոչ արեց.

«Մենք կցանկանայինք... որպեսզի բանվորները չսահմանափակվեն հենց միայն համակրելով, այլ ակտիվ մասնակցություն ունենան մեր թերթը վարելու գործում»:

Պարտիայի կենտրոնական օրգանի այս պահանջը բանվորական մասսաների կողմից կատարվեց:

1912 թվին «Պրավդա» թերթի խմբագրությանն ուղարկած նամակի մեջ Լենինը գրում է.

«Թերթը չէ՞ որ այնպիսի բան չէ, որ ընթերցողը կարդում է— գրողը գրում: Թերթը պետք է ինքը որոնի, ինքը ժամանակին գտնի և ժամանակին զետեղի որոշ

նյութ: Թերթը պետք է որոնի և գտնի իրեն անհրաժեշտ կադրերը»:

Բոլշևիկյան մամուլը սրբությամբ է կատարում լենինյան այս պահանջը: Նա ամենասերտ կապերով մասսաների հետ կապված լինելով հանդերձ, իր աշխատանքի ընթացքում հենվում է լայն ակտիվի վրա, առաջ քաշում ժողովրդական կյանքի համար ամենահրատապ հարցերը: Սովետական մամուլը աչքի լույսի պես պահպանում է բոլշևիկյան ժուռնալիստիկայի սրբազան տրադիցիաները, որը պատվաստել են Լենինն ու Ստալինը:

Լենինն ու Ստալինը իրենց քաղաքական գործունեությունը միշտ կապակցել են պարտիայի մամուլում կատարվող աշխատանքի հետ, «տալով ռևոլյուցիոն հրապարակախոսության, տպագիր պրոպագանդայի ու ագիտացիայի ամենավառ նմուշներ, հանդիսանալով սովետական ժուռնալիստիկայի ստեղծողները, կազմակերպողներն ու կառուցողները, հրապարակախոսական ոճի չգերազանցված վարպետներ, բանվոր դասակարգի մամուլի հիմնական սկզբունքները ստեղծողներ»: («Պրավդա»):

Բոլշևիկյան մամուլը և «Պրավդան» անգնահատելի դեր են խաղացել սովետական պետության ստեղծման, ամրապնդման և



նրա պաշտպանման գործում: Ստալինյան հնգամյակների տարիներին, մեր երկրի ինդուստրացման, գյուղի կոլեկտիվացման տարիներին մամուլը պարտիայի ձեռքին այն սուր զենքն է եղել, որի օգնությամբ մենք օր ու գիշեր կառուցել ենք մեր սոցիալիզմի վիթխարի շենքը, ոչնչացրել մեր ճանապարհին ընկած ամեն տեսակի ու գույնի թշնամիներին:

«Պրավդան» և բոլշևիկյան մամուլը ստախանովյան շարժման ոչ միայն պրոպագանդիստներն ու ագիտատորները հանդիսացան, այլև նրա ակտիվ կազմակերպողը: Բոլշևիկյան մամուլը մասսաներին համառորեն և հաստատակամորեն է դաստիարակել դեպի աշխատանքը, սեր պատվաստել դեպի գիտելիքները, գրականությունն ու արվեստը, մարդկանց ցույց տվել հերոսության ճանապարհը: Մամուլը սովետական յուրաքանչյուր քաղաքացու սրտում սեր է պատվաստում դեպի հայրենիքը և նրա պաշտպանությունը:

«Պրավդան» և սովետական մամուլը առանձնապես պատվով են կատարում իրենց մարտական դերը հայրենական պատերազմի օրերին:

1941 թվի հունիսի 23-ին, այսինքն պա-

տերազմը սկսվելուց մեկ օր հետո «Պրավ-
դայում» տպագրվեց Եմ. Յարոսլավսկու
«Սովետական ժողովրդի հայրենական մեծ
պատերազմը» վերնագրով հոդվածը: Մեր
երկրի ժողովուրդները Արտաքին Գործերի
Ժողովրդական Կոմիսար ընկեր Մոլոտովի
նոտայից հետո, մանրամասն իմացան Եմ.
Յարոսլավսկու հոդվածից, որ 1941 թվի
հունիսի 22-ի օրը պատմության մեջ մտավ
իբրև ֆաշիստական Գերմանիայի դեմ սո-
վետական ժողովրդի հայրենական մեծ պա-
տերազմի սկիզբ, Գերմանիայի, որը ավա-
զակային հարձակում է գործել Սովետական
Միության վրա: Հոդվածագիրը ցույց էր
տալիս, որ մեր գործը արդար է, մենք
պաշտպանելու շատ բան ունենք, և ունենք
միաժամանակ պաշտպանվելու միջոցներ,
որ թշնամին կջախջախվի և հաղթանակը
մերը կլինի:

Այնուհետև «Պրավդայում» և սովետա-
կան մամուլում տպագրվեցին հազարավոր
հոդվածներ, գիտական զրույցներ ու դա-
սախոսություններ՝ ուղղված գերմանա-ֆա-
շիստական պալթիչների դեմ:

Բոլշևիկյան մամուլը լայն կերպով լու-
սաբանեց մեր անծայրածիր երկրում տեղի
ունեցող հակաֆաշիստական միտինգների



նյութերը, աշխատավորների հետ խոսեց
նրանց հասկանալի լեզվով:

1941 թվի հունիսի 28-ին (այսինքն պատե-
րազմը սկսվելուց 6 օր անց) «Պրավդայի»
առաջնորդողը վերնագրված է «Հաղթանա-
կը պետք է նվաճել, հաղթանակը մերը կլի-
նի»: Մեր պարտիայի բոցաշունչ տրիբուն
«Պրավդան» նախազգուշացնում է, որ «պա-
տերազմը նոր է միայն սկսվում: Կարող է
պատահել, որ այն շուտ էլ չվերջանա: Պա-
տերազմը, որին մասնակցում են միլիոնա-
վոր մարդիկ, որը մղում է մեր ժողովուր-
դը, պատմական բարդ պայքար է:

Դժվարություններով, զրկանքներով, վը-
տանգներով չի կարելի վախեցնել մեր պան-
ծալի ժողովրդին: Մենք լավ գիտենք, որ
հաղթանակները իրենք իրենց չեն գալիս,
նրանք հարկավոր է ձեռք բերել ճակատնե-
րում՝ պատերազմի ճակատում և աշխա-
տանքի ճակատում»: Այնուհետև ի լուր բո-
լորին, «Պրավդան» շարունակում է.

«Մենք գիտենք մեկ բան, որ հաղթանա-
կը մերն է, ինչպիսին էլ որ լինեն առան-
ձին էտապները, ինչպիսի ելք էլ որ ունե-
նան առանձին մարտերը, հաղթանակը մերն
է:

Մե՛նք կհաղթենք, որովհետև մենք մղում

ենք հայրենական սրբազան պատերազմ, և մեր գործը արդար է, իսկ թշնամին գերմանական ժողովրդին իր ետևից բռնի կերպով քաշ է տալիս ոճրագործ, ավազակային, կողոպտիչ պատերազմի:

Մե՛նք կհաղթենք, որովհետև, ուժեղ, միասնական, հզոր է մեր Կարմիր Բանակը, անսպառ են մեր ռեզերվները, անհողդողդ է մեր ժողովրդի, մեր ստալինյան կառավարության կամքը:

...Թո՛ղ կատաղի թշնամին. թո՛ղ հիստերիկ կերպով աղաղակի, սուտ և ծամածռություններ անի ֆաշիզմի արյունարբու խեղկատակը, թո՛ղ նա ստերով մթագնի զինվորների գիտակցությունը, զինվորներ, որոնք ուղարկվում են կոտորվելու, նա չի կարող խախտել ժողովրդի մարտական համախմբվածությունը: Հաղթանակը մերը կլինի»:

Ինչպիսի՜ մարգարեական խոսքեր: Ինչպիսի՜ խորաթափանցություն: Այդ տողերում ինքը բոլշևիկյան պարտիան է խոսում հարազատ ժողովրդի հետ:

Դրանից մեկ օր հետո «Պրավդան» իր առաջնորդողը նվիրում է սովետական կանանց («Սովետական հայրենասիրուհու սրբազան պարտքը»): Պարտիայի մարտական



օրգանը պատերազմի առաջին իսկ օրերից նկատում է կանանց անգնահատելի դերը Հայրենիքի պաշտպանության գործում: Նա մեր երկրի աղջիկներին, կանանց կոչ է անում արտադրության մեջ փոխարինել ռազմաճակատ գնացած տղամարդկանց, ծավալել համատեղության կարգով մի քանի պրոֆեսիաների տիրապետելու շարժում, իսկ բանակ մեկնող աղջիկներին պարտավորեցնում է ետ չմնալ տղամարդկանցից: Պահանջում է կենաց և մահու կռիվ մղել հայրենիքի համար ռազմաճակատում և թիկունքում այնքան ժամանակ, քանի դեռ չի ոչնչացել ֆաշիզմը:

«Պրավդան» իր ամբողջ աշխատանքը վերակառուցելով պատերազմի շահերին համապատասխան, լայն կերպով լուսաբանում է հայրենական պատերազմի հերոսների մարտական սխրագործությունները, Սովետական Ինֆորմբյուրոյի հաղորդագրությունները: Չկա մի խնդիր Կարմիր Բանակի պայքարի հետ կապված, որն իր արձագանքը գտած չլինի բոլշևիկյան մամուլում: «Պրավդան» և սովետական մամուլը Կարմիր Բանակին ու մասսաներին ոտքի հանեցին հարազատ Մոսկվայի պաշտպանության համար, երկաթե տոկունությամբ

դաստիարակեցին հերոս քաղաքներ Լենինգրադի, Ստալինգրադի, Սևաստոպոլի և Օդեսայի պաշտպաններին: Կարմիր Բանակի հարձակումը բոլշևիկյան ճշմարտության վառ գույներով է փայլում սովետական մամուլի էջերում: Մամուլն ու բանակը միասին են հարվածում գերմանա-ֆաշիստական զավթիչներին: Գրիչը հավասարվել է սվինին:

***

«Պրավդան» և մամուլը լայն կերպով լուսաբանում են սովետական թիկունքի՝ մեր արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, գիտության և կուլտուրայի մարդկանց անձնազոհ աշխատանքը: Նրանք որպես կոլեկտիվ պրոպագանդիստ և ագիտատոր ամենուրեք կազմակերպում են թիկունքայիններին՝ ուժեղացնելու օգնությունը ռազմաճակատին: Բոլշևիկյան մամուլը կազմակերպեց սովետական հայրենասերներին աշխատել օր ու գիշեր, կրճատել նախատեսված ժամկետները և որքան կարելի է շատ արտադրանք տալ երկրին:

«Պրավդան» և սովետական մամուլը համաժողովրդական սեփականություն են դարձնում Ուրալի առաջավոր հանքագործ-



ների, Բաքվի ստախանովական նավթագործների, Ուզբեկստանի 200-անոց բամբակագործների, Վրաստանի թեյագործների, Հայաստանի խաղողագործների և մյուս ռեսպուբլիկաների ու երկրամասերի աշխատողների փորձը: Մամուլը օգնում է և կազմակերպում մեր տանկային, ինքնաթիռային, հրետանային, ականանետային, զինագործական գործարաններին, որպեսզի նրանք ավելի շատ արտադրանք թողարկեն, ռազմաճակատին տան այն ամենը, ինչ անհրաժեշտ է գերմանա-ֆաշիստական զավթիչներին լիակատար ջախջախելու համար:

«Պրավդան» և մեր մյուս հայտարավոր թերթերն ու ժուրնալները լուսաբանում են թիկունքի գվարդիականների աշխատանքային սխրագործությունները, նրանք այն վիթխարի հայելին են, որոնց մեջ արտացոլվում է մեր երկրի կյանքի պատկերը: Նրանք ցույց են տալիս բոլշևիկյան պարտիայի այն վիթխարի դերը, որ կատարել է մարդկության ազատության համար, այն ամենը, ինչ անում է ներկայումս գերմանա-ֆաշիստական օկուպանտներին լիակատար ոչնչացնելու համար:

Բոլշևիկյան մամուլը մեր պարտիայի

ձեռքին ամենասուր զենքն է, որի օգնությամբ սովետական ժողովուրդը, փառապանծ Կարմիր Բանակը արդարացի պատերազմ են մղում գերմանական զավթիչների դեմ և մեր Հայրենիքը ազատագրում ֆաշիստական աղտեղությունից:

***

Հայրենական պատերազմի օրերին անգնահատելի դեր են կատարում կրակի ու բոցերի մեջ ծնունդ առնող կարմիրբանակային թերթերը: «Կրասնայա Զվեզդա», «Բոյեց ՌԿԿԱ», «Վպերյոդ զա ռոդինու», «Վպերյոդ», «Բոյեց», «Զնամյա ռոդինա», «Բոյեվոյ Նատիսկ», «Սուվորովեց», «Առա՛ջ, Հանուն Հայրենիքի», «Կարմիր Զինվոր» և հարյուրավոր այլ թերթեր դարձել են ռազմիկների դաստիարակները և սիրելին:

Նրանք քայլում են մարտիկների հետ միասին կողք-կողքի, անցնում խրամատից խրամատ, մտնում բլինդաժից-բլինդաժ և հրետանային ու դնդացրային փոթորկալից կրակի տակ խոսում մարտիկների հետ, մասնակից դառնում նրանց ապրումներին:

Բոլորովին պատահական չէ, որ կարմիրբանակային տասնյակ թերթեր և զինվորական հարյուրավոր ժուռնալիստներ արժա-



նացել են կառավարական բարձր պարգևների: Ռազմաճակատային «Բոյեց ՌԿԿԱ» թերթը պարգևատրվել է Կարմիր աստղի շքանշանով, գլխ. ժուռնալիստ մայոր Բերեզնիկովը Կերչի թերակղզում կատարած դեսանտային գործողությունների ժամանակ ցուցաբերած մարտական սխրագործությունների համար ստացել է Սովետական Միության Հերոսի կոչում:

***

Հայրենական պատերազմի օրերին խոշոր դեր է կատարում Սովետական Հայաստանի բոլշևիկյան մամուլը: Հավատարիմ մնալով «Պրավդայի» մարտական սկզբունքներին, Սովետական Հայաստանի մամուլը կազմակերպում է հայ ժողովրդին և պայքարի հանում գերմանական զավթիչների լիակատար ջախջախման համար:

Անդրկովկասի բոլշևիկյան մամուլի ըսկիզբն անխզելիորեն կապված է ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի անվան հետ: Ընկեր Ստալինի անմիջական ջանքերով հիմնադրվեց Հավլաբարի ընդհատակյա հայտնի տպարանը, որտեղ տպագրվում և մասսաների մեջ տարածվում էին տասնյակ գրքեր, բրոշյուրներ և պրոկլամացիաներ: Ընկեր Ստալինի ջանքերով էր,

որ 1901 թ. սեպտեմբերից սկսեց լույս տեսնել Թբիլիսիի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության լենինյան-իսկրայական խմբի առաջին անլեգալ լրագիրը՝ «Բրձոլան»։

1906 թվի ապրիլի 10-ին ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ և նրա մերձավոր զինակիցներ Ստեփան Շահումյանի ու Սուրեն Սպանդարյանի խմբագրությամբ սկսեց լույս տեսնել բոլշևիկյան «Կայծ» հայերեն երկօրյա թերթը։

1920 թվի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն։ Սովետական կարգերի հաստատումից մեկ շաբաթ անց, 1920 թվի դեկտեմբերի 5-ին լույս տեսավ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի և Երևանի կոմիտեի օրգան «Կոմունիստի» առաջին համարը։ Թերթի առաջին համարի լոզունգներն էին.

«Կեցցե՛ Սովետական Հայաստանը», «Կեցցե՛ ազատարար Կարմիր Բանակը»։

«Կոմունիստը» իր 93-րդ համարից (1921 թ. ապրիլ) սկսվեց վերահրատարակվել «Խորհրդային Հայաստան» անունով, որը շարունակվում է մինչև այժմ։

1920—1944 թվերին Հայաստանում լույս



է տեսել 300-ից ավելի անուն թերթ և ամսագիր։ Այժմ յուրաքանչյուր շրջան իր սեփական թերթն ունի, իսկ մայրաքաղաքում լույս են տեսնում «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» (ռուսերեն լեզվով), «Սովետ Էրմանիստանը» (ադրբեջաներեն լեզվով) թերթերն ու «Սովետական գրականություն և արվեստ» ամսագիրը։

«Սովետական Հայաստանը» խոշոր աշխատանք է կատարել մեր ռեսպուբլիկայի ընթերցողների բազմաթիվ ... ընտեսությունը վերականգնելու, սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, արվեստն ու գրականությունը աճեցնելու ուղղությամբ։ Մեզ մոտ յուրաքանչյուր նոր կառուցված գործարանի, կոլտնտեսության, ասֆալտապատված ճանապարհի, ջրանցքի, նոր գրական ստեղծագործության, դրամայի ու օպերայի պատմությունն առաջին հերթին իր արտացոլումն է գտել «Սովետական Հայաստան» թերթի էջերում։ Թերթն իր գոյության ընթացքում ստեղծել է թղթակցական լայն ցանց։

Մեր ռեսպուբլիկայում «Սովետական Հայաստանը», «Կոմունիստը» և մյուս թերթերը անգնահատելի աշխատանք են կատարում հայրենական պատերազմի օրերին։ Տոգորված լինելով «Պրավդայի» տրադի-

ցիաներով, նրանք ամեն օր կազմակերպում են թիկունքայիններին, նրանց սովորեցնում նոր տեմպերով աշխատելու մեթոդները, լայն կերպով մասսայականացնում բազմադազգահականների, ստախանովականների, երկու և ավելի նորմա կատարողների փորձը: Նրանք հայրենական պատերազմի հերոսների օրինակով դաստիարակում են ռեզերվների մարտիկներին, պարտադիր ուսուցման ստորաբաժանումներում սովորող ընկերներին:

«Սովետական Հայաստանը» և մեր ռեսպուբլիկայի մյուս թերթերը ամեն օր, ամեն ժամ հայ աշխատավորության հետ խոսում են, նրան, իրեն հասկանալի լեզվով, բորբոքում նրանց սրտում վրիժառության զգացմունքը ընդդեմ գերմանական զավթիչների և մեր ժողովրդին ոտքի հանում հայրենական արդարացի պատերազմի: «Սովետական Հայաստանը» և ռեսպուբլիկայի մյուս թերթերը իրենց էջերում փառաբանում են հայրենական պատերազմի ճակատներում մարտնչող հայ մարտիկներին, սպաներին, գեներալներին, որոնք իրենց սխրագործություններով բազմապատկում են մեր նախնիների քաջագործությունները, բաց ճակատով կանգնում



եղբայրական մյուս ռեսպուբլիկաների ժողովուրդների զավակների հետ կողք-կողքի: Մեր թերթերը հայ ժողովրդին են հասցնում ռազմաճակատների դրության մասին եղած հաղորդագրությունները, էպիզոդները: Նրանք նույնպիսի ձևով հայ ժողովրդի սրտի խոսքն են հասցնում ռազմաճակատներում կռվող մեր հարազատներին:

***

Բոլշևիկյան մամուլը և «Պրավդան» իրենց բոցաշունչ խոսքերով ներկայումս ոգևորում և նոր սխրագործությունների են մղում դեպի արևմուտք արշավող Կարմիր Բանակի հերոս մարտիկներին, սպաներին և գեներալներին: Նրանք փառաբանում են Լենինգրադը բլոկադայից ազատած քաջերին, Կիևի, Խարկովի, Օդեսայի, Նիկոլաևի, Ղրիմի ազատարարներին, ջրային անցումների դյուցազններին, մեր պետական սահմանի վրա առաջին կարմիր դրոշները բարձրացնողներին: Նրանք ողջունում են հաղթող գեներալների գործերին, գերմանական գերությունից ազատագրված քաղաքացիներին:

Մեր հերոսական ժողովրդի անմահ սխրագործությունների տարեգրությունն է գրվում սովետական մամուլում: Ընթեր-

ցողը «Պրավդայի» և մյուս թերթերի էջե-
րից կարդում և ապա ոգևորվում է Կար-
միր Բանակի հաղթանակներով:

Սովետական մամուլը, գիրն ու գրակա-
նությունը լիակատար ի սպաս է դրվել մի
ընդհանուր նպատակի՝ գերմանա-ֆաշիս-
տական զավթիչների լիակատար ջախջախ-
ման, մեր սրբազան Հայրենիքի հողը այդ
աղտեղությունից վերջնականապես ազա-
տագրման մեծ նպատակին:

Մեզ մոտ բոլշևիկյան մամուլը սովե-
տական ժողովրդի հետ միասին հայրենա-
կան պատերազմի մարտական մասնակիցն
է: Մամուլը պարտիայի ձեռքում այն
սուր զենքն է, որը հայրենական պատե-
րազմի մրրիկների մեջ ավելի ուժով խո-
ցում է գերմանական ավազակներին և սո-
վետական սուրը կրկին ավետում գերմա-
նական գերությունից ազատագրված վայ-
րերին:

Ողջո՛ւյն «Պրավդային» և բոլշևիկյան
մամուլին՝ նրանց պանծալի օրվա առթիվ:
Կեցցե՛ մեր զինված ուժերի Գերագույն
Գլխավոր Հրամանատար, Սովետական
Միության Մարշալ ընկեր Ստալինը:
Մա՛հ գերմանական զավթիչներին: